1916 № 31.—Յուլիսի 31

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ. Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր. Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտաքարդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից.

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ԹԵՐԹԻՍ ԿԻՍԱՄԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԻՆ

«ՀԱՄԲԱՒԱԲԵՐԻ» խմբագրութիւնը խնդրում է կէս տարուայ բաժանորդներից՝ շուտով վերանորոգել բաժանորդագրութիւնը, այլապէս «Համբաւաբեր»-ի առաքումը կը դադարեցնենք յուլիսի 30-ից։

## Համաշխարհային պատերազմը

### ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Երզնկայի առումից յետոյ ռուս զօրքը առաջ է գնում երկու ուղղութեամբ և տապալում է թիւրքերի յամառ դիմադրութիւնները Խարբերդի և Դիարբեքիրի գծերի վրայ։ Շարունակ բռնւում են գերիներ, թնդանօթ, ռազմամթերք։ Գիւմիշխանէի ուղղութեամբ թշնամին հալածւում է գիւղերից, իսկ Բզուց դէպի հարաւ ռուս զօրքը գրաւել է Խոզուս գիւղը։

Եւ այդպէս, այդ կողմերում անյաջողութեան հանդիպած՝ թիւրքերը ճիգ են թափում զանգուածօրէն յարձակուելու Մուշ—Բիթլիսի, Վան—Ուրմիայի, ինչպէս և Քիրմանշահ—Համադանի ուղղութեամբ։ Այդ կողմերում, նրանց մեծ ճնշման տակ, ռուս զօրքը ետ է քաշուել դէպի հիւսիս և դէպի արևելք։ Զը նայելով այդպիսի հանգամանքին, թիւրքերի բռնած դիրքը յարձակողական բնոյթ չունի, այլ մի տեսակ պաշտպանողական։ Ձգնում են ձեռք բերած դիրքերի վրայ մնալ գոնէ մի առ ժամանակ։ Քիրմանշահում, օրինակ, նրանք այնքան մեծ ոյժ չունին, որպէս զի կարող լինին լուրջ ձեռնարկութիւնների ենել։

Այս կողմերում փոքր ինչ ձեռք բերած նրանց յաջողութիւնները, սակայն, աղօտանում և չէզոքանում են՝ Եգիպտոսի բանակի կատարեալ պարտութեան շնորհիւ.

Եւ յիրաւի, Ռոմայնի մօտ թիւրքերի կրած պարտութիւնը չափազանց զգալի պիտի լինի, որովհետև այդ արշաւանքով թշնամին, ըստ երևոյթին, նպատակ ունէր արգելք դառնալ Անգլիային դէպի Միջագետք նոր ոյժեր հանելու համար։ Անյաջողութիւնը կատարեալ եղաւ. թիւրք բանակը ջարդուելով՝ բազմաթիւ գերիներ թողեց անգլիացիների ձեռքը։ Այդ գերիների դրութիւնը պարզում է, թէ ինչպիսի վիճակի մէջ են թիւրքերը։ Կահիրէ են բերուած արդէն 2000-ից աւելի թիւրք գերիներ, որոնց մեծ մասը սոսկալի վիճակի մէջ է. գրեթէ բոկոտն ու մերկ, պապակուած ու անօթի, հիւծուած և մարդկային կերպարանքը կորցրած։

Հեղինակաւոր շրջաններն ու թերթերը չեշտում են զօրավար Մէրրէյի այդ յաղթանակի կարևորութիւնը, որ կատարելապէս քայքայեց թիւրքական ծրագրերը և ջարդուփշուր արաւ նրա ոյժերը այդ ուղղութեամբ։

### ԱՒՍՏՐԻԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Վերջին տեղեկութիւններն այս ռազմաբեմից՝ կարևոր են և քաջալերիչ։ Աւստրիական երկրորդ բանակի ճակատի վրայ թըշ-

նամին յաղթահարուեց և ներսուեց դէպի ետ: Իսկոյն յետոյ սկսեցին զարգանալ ռուսական ռազմական գործողութիւնները Դնեստրից դէպի Ստանիսլաւով տանող գծի վրայ: Այժմ արդէն մեր զօրքերը յարձակումներ են սկսել Պֆլանցէր—Բալտինի գլխաւոր ուժերի դէմ, ճնշել ու ետ են մղել թշնամուն՝ Դնեստրի հարաւից մինչև 25 վերստ հեռու և հասնելով Տլումաչ գետին, գրաւեցին Տիսմէնիցա քաղաքը: Աւելի հարաւ՝ բռնուած են Օտին և Դնեստրի վրայի Նիժնուև քաղաքները: Միաժամանակ ռուս զօրքը յարձակողական ձեռնարկութիւններ է սկսել Դնեստրի ձախ ափերի վրայ, ուր, 15 վերստ տարածութիւն բռնող ճակատում թշնամին հալածուել է բոլոր ամրացրած դիրքերից, իսկ մեր զօրքը, անցնելով Կորոպից գետը, յարձակուել է Մոնաստէր—ժիսկա—Նիժնուև երկաթուղային գծի ուղղութեամբ:

Ինչ վերաբերում է յաղթական աւարներին, օրէցօր աւելանում են և մեծ չափերի հասնում: Այդպէս, Դնեստրից դէպի հարաւ, զօր. Լէչիցկին, գրաւելով Տիսմէնիցան, գերել է 88 սպայ, 7,400 զինուոր, 5 թնդանօթ, 63 գնդացիր, ռումբի արկղեր, ռմբաձիգ գործիքներ և այլն:

### ԻՏԱԼԱԿԱՆ ԵՒ ՖՐԱՆՍԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԵՐԸ

Այս ռազմաճակատում կռիւները շարունակւում են յամառաբար՝ Սոմմ գետի ափերի վրայ: Նոյնը կատարւում է նաև Մաասի աջ ափին, Տիոմոնֆլեօրի ամբողջ գծի վրայ: Անգլօ-ֆրանսական զօրքը միշտ դէպի առաջ խաղալով, առնում են բազմաթիւ գերիներ: Վերդենի մօտ նոյնպէս գերմանացիների անյաջողութիւնները շարունակւում են:

Սակայն ուրախութիւն այս շաբաթ իտալացիների յաջողութիւնն է: Իտալացիք սկսել են յաղթանակ տանել աւստրիացիների դէմ մղուող կռիւներում: Յուլիսի 26-ի հեռագիրը աւետում է, որ նրանք կատարելապէս գրաւել են Սաբոտինո և Սան-Միքէլէ լեռները, որոնք Գորիցա քաղաքը պաշտպանող ուժեղ ամրութիւններ էին: Այդպիսով Գորիցայի մերձակայքը գտնւում է այլևս իտալացիների ձեռքը: Գերիների թիւը առայժմ հաշւում են 8,000. գրաւուած է 11 թնդանօթ, մօտ 100 գնդացիր և առատ ռազմամթերք:

## Ներքին տեսութիւն

### ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Ն. Կ. Մ. Փոխարքայի զինուորական մասի օգնական գեներալ Եանուշկևիչը պաշտօնապէս յայտարարել է հետևեալը.

«Մեր զօրքի՝ Թիւրքիայում առաջխաղացման հետ թիւրքահպատակ ազգաբնակութիւնը, թիւրք զօրքի նահանջելուց յետոյ, մասամբ ետ քաշուեց, մասամբ էլ թիկունքումը մնաց, թագնուեց անմատչելի ձորերում և կամ անցաւ մեր սահմանները:

Կովկասեան զօրքի բարձր Հրամանատարին հասած տեղեկութիւններին նայելով, ազատ մնացած հողերին աշխատում են տէր դառնալու տեղում մնացածները և կամ փախստականներն ու գաղթականները: Այդ նրանք կատարում են այն հաշւով, թէ գուցէ իրապէս տէր դառնան այդ հողերին՝ սեփականութեան իրաւունքով:

Ի նկատի առնելով այն հանգամանքը, որ պետութիւնը իր վրայ է առել նուաճած երկիրների կարօտ ազգաբնակութեան հոգատարութիւնը և տարեկան տասնեակ միլիոններ է ծախսում այդ բանի վրայ - թոյլատրելի չի կարող լինել, որ, անձնապէս հարստանալու դիտումով, յափշտակուեն ուրիշին պատկանող հողաբաժինները: Ն. Կ. Բարձրութիւնը բարեհաճեց յայտարարել ի գիտութիւն նոր նուաճած երկիրների ազգաբնակութեանը, որ մօտ ապագայում, նուաճուած նահանգներում ռուսական վարչութիւնը հաստատելուց յետոյ, դուրս կը հանուեն կամայականօրէն ուրիշի հողերը յափշտակողներն բոլոր տեղերից: Այդ նոյն վիճակին կենթարկուեն նաև այն փախստականները կամ գաղթականները, որոնք ձեռք են բերել և կամ գնել են այդպիսի հողաբաժիններ: Ազատ մնացող հողաբաժինները միայն կարող են տրուել վարձու տեղական նստակեաց ազգաբնակութիւններից ցանկացողներին՝ այն էլ տեղական վարչութեան թոյլտուութեամբը»:

### ՅԵՏԱՁԳՈՒՄՆ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐԻ ԶՕՐԱԿՈՉԻ

Պատերազմական նախարարութեանն է թողնում յետաձգելու I կարգի զօրակոչից 1896—1893 թուականների, II կարգից 1905—1893 թուականների զէնքի տակ կոչուողներից նրանց, որոնք ուսուցիչներ են պետական ժողովրդական տարրական, բարձր տարրական, գիւղատնտեսական և արհեստաւորական դպրոցներում: Այդ յետաձգումը տրւում է նրանց, որոնք պաշտօնի են կոչուած 1916 յուլիս 4-ից առաջ և զինուորական պետին կը ներկայացնեն տեղական տեսուչներից վկայաթղթեր:

---

Թերթերը հաղորդում են, որ յառաջիկայ I և II կարգի զինուորների զօրակոչը սկսելու է օգոստոս 15-ից, մաս առ մաս:

---

Պարզուած է, որ զինուորական ծառայութեան համար անպէտք ճանաչուած II կարգի ռատնիկները պիտի հաշուեն սպիտակ տոմսաւորների մէջ:

---

Ելեմտական նախարար Բարկի՝ արտասահմանից վերադառնալիս վերջնականապէս որոշուելու է նոր, պատերազմական կարճատև պետական փոխառութեան հարցը: Նոր փոխառութիւնը նոյն հիմունքների վրայ տեղի կունենայ, ինչ որ $5\frac{1}{2}\%$ 1916 թուականի փոխառութիւնը, յամենայն դէպս ոչ պակաս 2 միլիարդից: Նոր փոխառութեան բաժանորդութիւնը կսկսի առաջիկայ հոկտեմբերից:

---

Նախարարների խորհուրդը վճռել է, ինչպէս ասում են թերթերը, Լեհաստանին շնորհել լայն ինքնավարութիւն՝ ազգային կուլտուրան զարգացնելու համար: Կը լինի երկպալատեան սէյմ: Այդ բոլորի մասին հրովարտակը կը յայտարարուի յուլիս 30-ին:

---

Սև ծովի նաւատորմիղի ծովակալ Էբէրգարդը հրաժարեցրած է և նրա փոխարէն նշանակուած փոխ-ծովակալ Ալէքսանդր Կոլչակը:

### ԻՆՉՊԷՍ ԵՆ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐԸ ՀԱՍԿԱՆՈՒՄ ԿԱՐԳԱԴՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ:

Մօտ երկու ամիս առաջ պոստատանը, Թիֆլիսում, մի պարոն տանում է մի ծանրոց (посылка) գրքեր Պարսկաստան ուղարկելու: Պոստատանը յայտնում են, որ գրաւոր պատուէր կայ, որով Պարսկաստան թուղթ ուղարկելն արգելւում է:

*Պարոնը փորձում է պաշտօնեային բացատրել, որ այդ արգելքը կարող է վերաբերել միմիայն գրելու թղթին, որ այժմ Ռուսաստանում պատերազմի պատճառաւ թանկ է ու պակաս: Բանը հասնում է պաշտօնէին, որ նոյնպէս այլ կերպ չի ուզում ըմբռնած լինել այդ պատուէրը, քան իր ստորագրեալը:*

*Տեղի ունեցած խօսպատանքի միջոցին պարզւում է, որ նախանձաւոր պաշտօնեան Պարսկաստան ուղարկուելիք մի ծանրոցից դուրս է հանել այն մի կտոր թուղթը, որով փաթաթուած էր ծանրոցի մէջ դրուած քաղցրաւենիքը (կոնֆեկտ):*

## ԹԱՏՐՈՆԱԿԱՆ ՆՈՐ ՏՈՒՐՔԸ.

*Նախարարների խորհուրդը այսպիսի փոփոխութեան է ենթարկել թատրոնական տոմսերի տուրքը:*

*5 կոպ.—50 կոպէկից պակաս գին ունեցող տոմսի համար. 10 կ.—մինչև 1 ռ. համար. 20 կ.—մինչև 1 ռ. 50-ի համար. 35 կ.—մինչև 2 ռ. 50 կ. համար. 80 կ.—մինչև 3 ռուբլիանոցի համար. 1 ռ.—4-ի համար. 1 ռ. 60—մինչև 5 ռ. համար. 2 ռ.—մինչև 8 ռ. համար:*

## ԹԱՆԳՈՒԹԻՒՆԸ, ԱՆԳԼԻԱՑԻՔ ԵՒ ՄԵՆՔ

*Անգլիան մէկն է այն կուլտուրական երկիրներից, որ իր հեղինակաւորութեամբ միշտ էլ օրինակելի կը մնայ:*

*Պատերազմից առաջացած տնտեսական տագնապը ամենուրեք առաջ է բերել յամառ կռիւ ներկայ թանգութեան դէմ: Անգլիան էլ յետ չէր կարող մնալ այդ կռուից: Սակայն ո՞րպիսի զանազանութիւն ունի մեր և նրանց կռուի եղանակը: Մինչ մենք հազիւ քնից արթնացածի պէս դեռ նոր ենք ձեռք մեկնում սպառողական խանութներին և մի գլուխ վա՜յ տալիս թերթերում... ու լռում: Այնտեղ, ծովային այդ չքնաղ երկրում, «ահեղ թանգութեան դէմ» կռիւն ունի համաժողովրդական բնաւորութիւն:*

*Եւ մեծ է անգլուհու դերն այնտեղ: Մենք առաջ կբերենք մի շարք փաստեր, որոնք սփռուած են զանազան թերթերում:*

*Լոնդոնում Անգլիական առողջապահական ինստիտուտը կազմակերպել է մի ցուցահանդէս՝ «խնայողութիւնը ընտանեկան տնտեսութեան մէջ»—անունով: Նա ունեցել է մի քանի համագումար: Թերթերը ողողուել են բազմաթիւ յօդուածներով: Խօսել և թանգութեան դէմ նիզակներ են ճօճել մինիստրներն ու պարլամենտականները, լորդերն ու նրանց փափկասուն կողակիցները: Նրանք միաբերան շեշտել են կեանքի ծայրայեղ թանգութիւնը և սովի ուրուականը:*

*Սակայն այդ թանգութիւնը ի՞նչ չափեր ունի: Գոնէ 1½ պատերազմական տարում կեանքը այնտեղ թանգացել է 30%-ով: Ուրիշ խօսքով՝ այն, ինչ պատերազմից առաջ արժէր 10 կոպ., 1½ տարի յետոյ ծախուել է 13 կոպ.:*

*Օ, ի՞նչ համեմատութիւն մեր դաժան կեանքի հետ: Զարմանալի չէ՞ այդ: Եւ եթէ մենք լինէինք, մինչև երկինք շնորհակալ չէինք լինի ու թուլամորթութեան և անգործունէութեանը փարուէի՞:*

*Ուրեմն մենք որ տանում ենք թանգութեան ներկայ ծանրութիւնը, չը պէ՞տք է հետաքրքրուենք այն ամենով, ինչ կատարւում է Անգլիայում:*

*Անգլիացի ժողովուրդը, որ դարերով յարգել ու խոնարհուել է մարդու արժանապատուութեան և ազատութեան առաջ, այսօր պահանջում է, որ ամեն մէկը հաւասարապէս կրի հայրենիքի ծանր խաչը:*

*Եւ իսկապէս: Հեռու չէ այն ժամանակը, երբ թւում էր, որ պարտադիր զինուորագրութիւնը մուտք չէր գործի Անգլիայում: Սակայն, ո՜վ զարմանք, պարտադիր զինուորութիւնը անցաւ ու կեանքի կոչուեց առանց բողոքի, առանց տատանումների: Այդ բաւական չէ: Յիշուած ցուցահանդէսի ելքը ցոյց է տալիս, որ խաղաղ ժողովուրդը, առանց հասակի ու սեռի խտրութեան, յետ չի մնում իր զինակիր եղբօրից:*

*Խնայողութեան տենդը վարակել է ողջ կայսրութիւնը: Ցամենայն դէպս այժմ այնտեղ ոգևորւում և կիրառւում են այնպիսի ծրագրեր, որոնք առաջին հայեացքից ծիծաղ կարող են առաջացնել մեզ մօտ:*

*Օրինակ՝ Անգլիացիք առանց ֆրակի ամօթ էին համարում ապարանքներում ճաշի նստել. այժմ սկսել են «եօլա գնալ»... նոյնիսկ առանց օսլայած սպիտակեղէնի:*

*Մէկը հաշուել է, որ Անգլիայում մի տարուայ ընթացքում տղամարդկանց սպիտակեղէնների համար գործ է ածւում 70 միլիոն ռուբլու օսլայ:*

*Եւ լրագրերը այդ թիւը հոլովելով, տուին այն արդիւնքը, որ այժմ պատահում են բազմաթիւ ջէնտլմէն պարոններ՝ լոկ փափուկ շապիկով:*

*Անգլիայում սիրում են բնութիւնը: Այնտեղ քիչ են այն բնակարանները, որոնք չունենան գէթ փոքրիկ պարտէզներ: Հակառակ դէպքում պարտիզիկները տեղաւորւում են արկղներում և դնում են պատշգամբում կամ տանիքների վրայ:*

*Խնայողութեան քարոզիչները վճռել են, կռուի ընթացքում ամեն բան օգտագործել: Լրագրերում և զանազան թերթերում զետեղել են յօդուածներ, որով ապացուցել են, որ ամեն մի թիզ հողը պիտի շահ բերէ: Լուրջ ու խոհուն մարդիկ զանազան փորձեր ու հաշիւներ անելուց յետոյ՝ վճռել են անպայման ունենալ սեփական բանջարանոց: Երբեմն—նոյնպիսի արկղներում—պատշգամբում կամ տանիքին: Անհրաժեշտ դէպքում «բանջարանոցի» սիրուն՝ ոչնչացւում է «պարտէզը»:*

*Էլ չեմ ասում, որ Լոնդոնի բնակչութիւնը տարուել է հաւաբուծութեամբ:*

*«Տնտեսական ցուցահանդէսը» պարզել է, որ աշխատութեան և խելացի խնամքի շնորհիւ, 6—7 հաւը կարող են անպակաս կերպով տալ ամիսը հարիւր ձու: Եւ ամեն մի հաւ իւրաքանչիւր լոնդոնցու վրայ կը նստի ամսական 35 կոպ.:*

*Ի հարկէ, մեզնում գոյութիւն ունեցող գների հետ համեմատած, ուրիշ թուեր կստացուի. բայց չէ՞ որ ձուն մեզնում երկու անգամ թանգ է ծախւում:*

*Սակայն այնտեղ սրանից էլ աւելի լուրջ ու շահեկան գործ է կատարուել:*

*Առևտրական նախարարութիւնը, օրինակ, հրատարակել է «Պետական խոհարարական ձեռնարկ», որտեղ յիշուած են ամենաէժանագին կերակուրների պատրաստելու ձևերը. և այդ օգտաւէտ գրքոյկը ցրւում է ժողովուրդի մէջ ձրիաբար:*

*Հիմք է դրուած «Կանանց ռազմատնտեսական միութեան», որի անդամները հաշւում են մի քանի տասնեակ հազարներ:*

*Ամեն մի անդամ պարտաւոր է.—*

*1) Չըկարել նոր տարազով հագուստ, այլ նորոգել հինը:*

*2) Ման գալ ոտով կամ օգտուել միմիայն ընդհանրութեանը ծառայող հանրակառքերով, երկաթուղիներով, շոգենաւով,—սակայն միանգամայն մերժել ինքնաշարժը (աւտոմօբիլը), ձին և այլն:*

*3) Ոչ ոքի ճաշի չը հրաւիրել տուն կամ ճաշարան:*

*4) Միանգամայն ձեռք չը բերել շքեղ զարդ ու կարդ, կահկարասիք և այլն: Եւ որ գլխաւորն է՝ չըգնել որևէ արտասահմանի ապրանք, որպէսզի փողը մնայ հայրենի երկրում:*

*5) Պահել ամենածայրայեղ դէպքում միայն հարկաւոր թուով ծառաներ և այլն:*

*Կանանց հենց այդ միութեան (լիգա) պահանջմամբ Լոնդոնի մեծ թերթերը մերժել են տպագրելու այն յայտարարութիւնները, որոնք վերաբերւում են արդ ու զարդի վաճառման:*

*Պէտք է նկատել, որ այդ միութեան շարքերն են մտել բարձր խաւերի այնպիսի հարուստ ներկայացուցիչներ, որոնց կող-*

քով թանգութիւնը թեթև կերպով անգամ չի անցել։ Սակայն նրանք սրբազան պարտք են համարել «օրինակ լինել»։ Եւ իսկապէս որևէ դքսուհի կամ լէդի նորոգուած շորեր հագին երևալով խայտաբղէտ կանանց շրջանում՝ գրաւում է բազմաթիւ հայեացքներ։ Եւ նրա կողքի «հասարակ մահկանացուն» իրեն վատ է զգում, երբ իր մոդայի շորերի խշխշոցն է լսում։

Ո՞րտեղ է, ո՞ր մի այլ երկրում այժմ կարելի է հանդիպել այդպիսի գեղեցիկ օրինակների։

Այստեղ, ակամայից ցցւում է մեր գլխում թեթև համեմատութիւնը՝ Անգլիայի և մեր Հայրենիքի...

Հարց։ Ի՞նչ բաղդ ու ընթացք կունենայ այդ միևնոյն միութիւնը, եթէ մտադրուի հիմնել մեզնում։

Եւ... կան շատ բաներ, որոնք անւում են այնտեղ, բայց դժուար է երազել մեր միջավայրում, մեր հորիզոններում...

Օրինակ. Անգլիայի նախարարները խորհրդակցել են՝ միջոց գտնեն իրենց ռոճիկները պակասեցնելու, «որպէս զի պետական գանձարկղը չը ծանրաբեռնեն աւելորդ ծախսերով»...

Եւ իրենց մուտքը պակսեցրել են երեք անգամ։

Պարլամենտի շատ անդամներ հրաժարուել են որևէ վարձատրութիւնից։

Վեհաշուք տիկնայք, որ առաջ պարահանդէսների ու ճաշերի վրայ հազարներ են մսխել, այժմ այդ փողերը պարբերաբար մտցնում են պատերազմական գանձարանը...

Հասկանալի է, որ այդպիսի պայմաններում խնայողութեանը արձագանք են տալիս բոլոր խաւերը։ Եւ այդպիսով թանգութեան դէմ կռիւը դառնում է ը ն դ հ ա ն ու ր մի գործ։

Ինչո՞ւ չըփորձենք օրինակ առնել Անգլիայից։

Մենք յամառաբար հրաւէր ենք կարդում բոլոր կանանց, որ նման կռիւ յայտարարեն թանգութեան դէմ և սկսեն խնայողութիւնը։

Չէ՞ որ մեզնում կեանքը թանգացել է ոչ թէ 30%, այլ հարիւրաւոր տոկոս։

Արամ Տօնեան

---

## ԾԱՂԿԵՓՈՒՆՋ ԱՐԵԱՆ ԴԱՇՏԵՐԻՑ

Դ.

Պ ա հ ա կ ու թ ե ա ն մ ի ջ ո ց ի ն.

Լուսնի ոսկէ եղջիւրը հեղիկ սահեց, անցաւ անտառապատ բլուրի յետևը, որ լայնածիր դաշտի մէջ մէն մենակ ձգուել, արձանացել էր, ինչպէս աւազի հարթ շերտի վրայ քարացած կրեայ։

Այդ պահին, առաջապահ մեր չորս վաշտը, գիշերային արշաւի նախազգուշութեան բոլոր միջոցներով, լռիկ անցնում էր եղենու անտառի միջով։ Ինչպէս միշտ այսպիսի դէպքերում, երևակայութիւնը գրգռող, տրամադրութիւնը ճնշող առանձին նախանձով, մենք—սպայ, թէ զինուոր, պատկերացնում էինք թիկունքում, 4—5 վերստի վրայ, այդ ժամին հանգիստ, անվրդով քուն մտած մեր ընկերներին, և զինուորականի չարքաշ մեր օր ու արևը աւելի ևս մռայլ գոյն էր ստանում։ Աջից գնացող խուզարկու շղթան յանկարծ կանգ առաւ, և պայմանական մի նշանով հազարից աւելի մարդկային այդ շարժուն զանգուածը վարկենապէս փռուեց գետնին ու քարացաւ։ Սիրտը յուզող նեարդային մէկ-երկու վայրկեան տանջալից սպասումին յաջորդեց աւտրիացոց կողմից տուած համազարկը, որին իբրև պատասխան՝ հնչեց ռուսական խրոխտ «ուռա՜»-ն և մենք, սոված վագրերի պէս, ոտքին առանք դէպի մոլորուած, իւր յետապահ զօրքերից անջատուած թշնամու վաշտը, որ կարճ դիմադրութիւնից յետոյ զէնքերը ձգեց, գթութիւն խնդրեց։ Գերիներին ու վիրաւորներին գունդը ճանապարհելուց յետոյ՝ մենք շարունակեցինք առաջ շարժուել. հասնելով անտառի ծայրին, որտեղ մեզ հրամայուած էր դիրքեր ընտրել և պահակութիւն անել,—ինձ մօտեցաւ պրապորշչիկ Սուելիևը ու կտրուած ձայնով շշնջաց.

—Գիտե՞ս, չորս սպանուածներից մէկը պրապորշչիկ Խրիստիանին է. անիրաւ գնդակը աջ յօնքից մտել, ձախ ականջից դուրս է եկել։ Խե՜ղճ տղայ, ի՜նչպէս ապրել էր ուզում։ Յիշո՞ւմ ես, վագոնում նա ո՞րպիսի կարօտով երազում էր այն օրուայ մասին, երբ պատերազմից յետոյ՝ կուրծքը շքանշաններով զարդարած, «Ծովափնեայ» այգում, սիրած կոյսի հետ թևանցուկ կըզբոսնի երեկոները, դիտելով հարաւի փարթամ վերջալոյսին ծովի ալիքների աշխոյժ խաղը։

Վարկենական լռութիւնից յետոյ՝ նա շարունակեց.

—Սանեք, ո՜վ, մեզանից ո՜վ չի ուզում ապրել, ապրել ու ապրել։ Ի՞նչ համեմատութիւն կեանքի ու աւերիչ մահուան։

Նա հեռացաւ, իսկ ես մտքով հետևեցի նրան, այդ հազուագիւտ մարդուն ու ընկերոջը, և տխուր խոհերի խեղդող շղին ճնշասութեանս հետ լցուեց կուրծքս, թանձրացաւ այնտեղ, համակեց սիրտս։

Սուելիևը բազմանդամ ընտանիքի հայր, Պետրոգրադում մասնաւոր վարժարանի (գիմնազիայի) դասատու, տասնեհինգ չարքաշ տարիների բեռան տակ կորացած մէջքով մանկավարժ ու համեստ գիտնական, խաղաղ ձգտումների ու տրամադրութեան տէր քաղաքացի, իրերի տարերային յեղիւրանքով, հանգամանքների քմահաճ բերմունքով, թողնում է դպրոցը, մատաղ սերունդների դաստիարակութեան գործը, որը նա սիրում է իւր ստեղծագործութեան պէս, գրչի փոխարէն զէնք է առնում և ակամայ միանում է նրանց, որոնց անցած ճանապարհին մնում է միայն աւեր ու մոխիր, արիւն ու արցունք։ Իւր սան ու սանուհիներից ստացած բազմաթիւ նամակների ընթերցումն ամեն անգամ նրան հոգեկան խոր տանջանք էր պատճառում, նրա խոշոր աչքերը փայլում էին զսպուած արցունքի շաղով. նա ծխում, անվերջ ծխում էր անգլիական ամուր ծխախոտով լցուն իւր մորճը։ Այսպէս, մի քանի օր առաջ, երբ մենք բացօթեայ գիշերում էինք աւստրիացիների դիմաց և առաւօտեան պէտք է կուրծք կրծքի տայինք, նա, իւր փոքր դստեր նամակից սաստիկ յուզուած, տանջանքով բացականչեց.

—Արդարև, պատերազմը ցնցում, զգաստացնում է ազգերը, երևան է հանում նրանց ստեղծագործական կարողութիւնը, կազմակերպչական ոգին. յիրաւի, որոշ անհատներ անխուսափելի մահն արհամարհող խիզախ քաջութեամբ բարձր հերոսութեան օրինակ են տալիս, վեհ անուն հանում։—Այնուամենայնիւ, պատերազմն ընդհանրական չարիք է, որ հարիւր հազարաւոր, նոյնիսկ միլիոնաւոր մարդկանց սուգ ու արցունք է բերում, զրկանքներով լի տխուր ապագայ է ստեղծում։ Այո, մեծ առաքինութիւն է հայրենասիրութիւնը, գեղեցիկ է պարտքի ճանապարհին մահուան ընդառաջելու գիտակցութիւնը,—բայց այդ բաները միշտ ընդունակ չեն խլացնելու խաղաղ կուլտուրայի, ընտանիքի ու զաւակների հետ կապուած զգացմունքի ցայտուն ուժգնութիւնը, երջանկութեան հասնող այդ հմայքի խորութիւնը։ Ես վախկոտներից չեմ, սակայն տեսա՞ր, գլուխս որպիսի՜ խնամքով ծածկել էի այն զինուորի ոտների ետևում, ն ր ա ն ց արձակած պատահական գնդակներից պաշտպանուելու միամիտ հաւատով գոտեպնդուած։ Այդ տեսակ րոպէներին, արեան դաշտերը, որտեղ արիութիւնն ու փոքրոգութիւնը, փառքն ու անկումը իրար յաջորդում են արագ պտտուող անիւի մասերի նման,—իմ մէջ առաջ են բերում միայն զարշանք, որովհետև ես ապրել եմ ուզում, ուզում եմ աշխատել, ուզում եմ ստեղծագործել։

Եւ խաղաղ ապրումների, տենչերի ու թռիչքների առատ աղբիւր այդ կեանքը, ո՜վ գիտէ, վաղը կոպիտ, բայց հաստատուն ձեռքի արձակած մի գնդակով կարող է յաւիտեան դադարել ու ոչինչ, ոչինչ այլևս ոյժ չի ունենայ շարժելու նրա այժմեան ճըկուն լեզուն, գեղեցիկ շրթունքները, արտայայտիչ խելացի աչքերը՝

Այդ յոռի մտքերին վերջնականապէս անձնատուր լինելու տրամադրութիւնից ինձ հանեց պրապորշչիկ Անդրիւշչենկոն, մի-

անկախութիւն ստացած Ուկրաինայի մայրաքաղաքը, իսկ ռուս Ցարի իրաւասութիւնը հին Մոսկովեան իշխանութեան սահմաններից այն կողմը չպիտի տարածուի... Սակայն մինչ այդ ցանկալի ժամը մենք տակաւին շատ ծանր աշխատանք ունենք կատարելու, դեռ բազմաթիւ անգամ մենք արեան դաշտերում մեր զաւակը յանձնելու ենք հատու սրերին։

«Ալպեան քնքոյշ ծաղիկ, իմ եզակի Մարի, եթէ ինձ վիճակուած է քո առաջ գալ, քեզ ներկայանալ խոցուած սրտով, սիրոյ ու վերջին ըղձի խօսքեր արտասանելու անընդունակ, անշարժ, պաղ շրթունքներով,—չմոռանաս դագաղս զարդարելու մանուշակներով, որ երկուսս էլ այնքան սիրում ենք։ Ց՛ գրութիւն. Քո Գոտիկ»։

Այս նամակն առանձնապէս ճնշող տպաւորութիւն թողեց Անդրիաշչենկոյի վրայ, որը գլխարկը քաշեց աչքերին ու անյայտացաւ Ֆոլ՛ւարկի կողմը։ Ես զինուորներին հրամայեցի երկու գերեզման փորել, մէկը ուլանների համար, իսկ միւսը՝ կոռնէտի։ Այն միջոցին, երբ իմ մարդիկ փայտէ հասարակ խաչին ամրացնում էին կոռնէտի պարանոցից արձակած մեդալիօնը, որից պարզուեց, որ նա հունգարական ուլանների Ը-րդ գնդի սպայ է, Գուստաւ Մադեր ազգանունով,—յայտնուեցաւ Անդրիաշչենկոն։ Ֆոլ՛ւարկի ծաղկանոցում (օրանժերէյում) նա պատրաստել էր մի շքեղ պսակ-քնար, լարերն ամբողջապէս մանուշակից և անմոռացներից (незабудка)։ Պսակը խնամքով տեղաւորելով կոռնէտի շիրմին, նա համբուրեց նրա հողաթումբը ու արտասուքները մեզանից ծածկելու համար՝ շուռ եկաւ։ Ժապաւէնի փոխարէն հասարակ կտաւի վրայ քիմիական մատիտով գրուած է. «Հերոս հունգար կոռնէտին—ռուս պրապորշչիկը»։

Վ. Արմէն

## Մ Ի Խ Ն Դ Ր Ա Ն Ք

### (ՀԱՅՈՑ ԴԱՏԻՆ ՆՊԱՍՏԵԼՈՒ ՀԱՄԱՐ)

Առաջ ես խնդրած էի հայրենակիցներից ինձ ուղարկել ստոյգ տեղեկութիւններ և փաստեր անցեալ տարուայ հայոց կոտորածների մասին։

Մեծ շնորհակալութեամբ յայտնում եմ որ ի պատասխան իմ հրատարակած կոչին, ես ստացայ հետաքրքրական տեղեկութիւններ և ականատեսների վկայութիւններ երկրի զանազան կողմերից՝ թէ գրաւոր և թէ բերանացի։

Այժմ ես նորից կրկնում եմ իմ կոչը նոր տեղեկութիւններ և փաստեր ձեռք բերելու համար։ Մեր մեծահռչակ բարեկամ Լորդ Բրայս կրկին նամակներով կուզի տեղեկութիւն։ Նա շուտով լոյս կ'ընծայէ հայոց ջարդերի ամբողջական պատմութիւնը, և այդ լրացնելու համար դեռ պէտք ունի հետևեալներին.

Դիարպէքիրի, Սղերդի, Բալուի, Անգիւրիոյ, Ադանայի կոտորածների կամ տեղահանութեան մանրամասներէն։

Շատ հետաքրքրական են առանձին զոհերի կրած արկածները և տառապանքները, աչքով տեսածները, թիւրք վայրագութեան բնորոշ դէպքեր և պատկերներ, հայերի, մանաւորապէս հայ կանանց ընթացքը հանդէպ այդ գազանութեանց, դիմադրութեանց փորձեր և այլն։

Արտամէտցի մի տիկին ինձ պատմեց իր գլխին եկած արկածները, որ ամենացնցող մի վէպի նիւթ կարող է մատակարարել, և այդ կը հրատարակուի Անգլիայում և անկասկած կարթնցնի մեծ յուզում։

Այդ ուղղութեամբ ոևէ պատմուածք և փաստեր, առանց սովորական ողբուկոծերի, իսկական անցքերից առնուած պատկերներ, շատ օգտակար են պահանջուած գործին համար։ Այդպիսի գրութիւն ուղարկողներ անպատճառ կ'ստանան դրամ, համաձայն իրենց աշխատութեան։ Ուրախութեամբ պատրաստ եմ վճարել նաև լաւ լուսանկարների համար։

Իմ հասցէն՝ Ազգային Բիւրօ, Լերմոնտովսկայա № 12, Թիֆլիս, և կամ 47 a Redcliffe square, London. S. W.

Այս վերջին Լոնդոնի հասցէն աւելի լաւ է, ի հարկէ։

Ես խնդրում եմ չմոռանալ մանրամասներ հաղորդել վերջերս գրաւուած Բաբերդի, Քղիի, Գիւմիշխանէի և գուցէ շուտով էլ Երզնկայի անցքերի մասին։

Արշակ Սաֆրաստեան

## ԹՌՈՒՑԻԿ ԱԿՆԱՐԿ ՇԻՐԱԿԻ ԳԱՒԱՌԻՑ

### IV

### ԱՌՈՂՋԱՊԱՀԱԿԱՆ *)

Գիւղական մաքուր օդը, առողջարար ջուրը և կաթնեղէն ու բուսեղէն կերակուրները շատ անգամ առիթ են տուել ինձ մտածելու, որ այս մարդիկ թերևս հիւանդութիւն ասած բանը չիմանային, եթէ միայն առողջապահօրէն ապրէին. իսկ սրանց հակառողջապահական և կեղտոտ կենցաղը տեսնելով՝ յաճախ եմ կրկնել ցաւելով «Ափսոս այս օդ ու ջուրը, որ սրանք են վայելում»։ Այս մարդիկ արքայութիւնը դժոխք են դարձնում. ամենագեղեցիկ բանաստեղծութիւնը փչանում է... Տգիտութիւն և անթափանցելի խաւար։ Մտնում ես հիւանդի մօտ, ամբողջ գիւղն այնտեղ է—ահա այնտեղ մախորկա ծխողները, խորհրդատու պառաւ-ջադուները, հառաչող ու լացող կանայք, որոնք հիւանդի հետ քիթ-քթի տուած՝ թունաւորում են խեղճին իրանց շնչով...

Ոչ մի դէպքում գիւղացու տգիտութիւնը այնքան կործանարար չէ, ինչպէս վարակիչ հիւանդութեան ժամանակ՝ իրար տուն անարգել յաճախելը։

Այս դէպքում գիւղացին անգիտութեամբ ոճիր, մարդասպանութիւն է գործում, որովհետև պատճառ է դառնում հարիւրաւոր անմեղ մանուկների կորստեան։ Վա՜յ այն գիւղին, որտեղ պատահեց ծաղիկ, կարմրուկ, դիֆտերիտ, կապոյտ հազ, կարմիր քամի, բծաւոր տիֆ կամ ուրիշ վարակիչ հիւանդութիւն—համաճարակը պատրաստ է արդէն ամենալայն չափով։

Ընդհանրապէս գիւղացու, մանաւանդ Ալէքսանդրապոլի գիւղացու առողջապահականը անմխիթար է։

Տգիտութեան, մասամբ էլ փայտի սակաւութեան պատճառով նա ապրում է գոմերում—օդաներում։

Այստեղ վառարան չը կայ—բուխարին մի քանի կտոր մնացող աթարով նշանակութիւն չունի. տաքանում է միայն անասունների արտաթորութիւնների գոլորշիներով և նրանց մարմնի արտաշնչումով (բերանից և կաշուից)։ Թէ ինչ մթնոլորտ կարող է լինել այս տեսակ տաքութիւնից մի տեղում, ուր գրեթէ օդի միակ մուտքը նեղ երդիկներից պիտի լինի, որ ընդհանրապէս փակ են, հասկանալի է արդէն։ Ինչպէս և պարզ է այն, թէ ո՜ր աստիճան «առողջարար» կարող է լինել այն օդը, որ ծծուած է քրտինքի գոլորշիներով, որոնց մէջ պարունակւում են շատ վնասակար թթուտներ և նիւթերի փոխանակութիւնից մնացած բազմաթիւ թոյներ։

Արտաքնոցների կատարեալ բացակայութիւն։ Մարդ զզւում է, երբ անցնում է փողոցներով... Եթէ գիւղացին հասկանար, որ բացի միւս վնասներից, փոշու հետ միասին կուլ է տալիս իր սեփական կղկղանքը—գուցէ նա այլ կերպ վարուէր։ Աւելին ասեմ՝ բացի փոշու հետ կուլ տալուց, գիւղացին անգիտակցօրէն կուլ է տալիս արտադրած աղբը, և այս շատ հասարակ կերպով։

Չէ՞ որ այստեղ տները գրեթէ զետնին հաւասար են և տանիքները փողոցների շարունակութիւն են կազմում։ Տանիքների երդիկներից քամին աղբը լցնում է օդայում եղած կաթսաների մէջ և կերակրի հետ միասին շատ բաներում։

* Տես «Համբաւաբեր» № 27։

Մարդկանց և անասունների արտաթորութիւնը ուրիշ ամեն տեսակ աղբի հետ միասին, որոնցով անչափ հարուստ էին Շիրակի գիւղերը—այժմ, շնորհիւ գաղթականների աւելի են հարստացել։ Գիւղացիներից ոմանք, ինչպէս և Շիրակի «մայրաքաղաք» Ալէքսանդրապոլում, ծախսից ազատ մնալու համար, աղբը իրենց պարտէզներում և բակերում են թաղում։

Այսպիսով այս աղտեղութիւնները ապականում են հողը, ծծւում խմելու ջրերի մէջ և հիւանդութիւնների տարածման աղբիւր դառնում։ Անսպառ աղբիւր ջրի ու հողի ապականութեան, հիւանդութիւնների և մահացութեան…

Բուն բնակիչները, որոնք մօտ 100 տարի առաջ են գաղթել Տաճկաստանից, շատ չեն տարբերւում նոր գաղթականներից։

Կեղտոտութիւնը աչք է ծակում—կեղտոտութիւն մարմնի, հանդերձի և նիստ ու կացի։ Իսկ ինչ որ զարմանալին է, այդ այն է, որ սրանց անասունները առողջապահական տեսակէտից աւելի լաւ, աւելի մաքուր են, քան երեխաները…

Այս աստիճան յետամնաց, խաւար ու աչքաթող մի երկիր կեանքիս մէջ տակաւին չեմ տեսել, նոյն իսկ Պարսկաստանում։

Եւ չկայ կարծես մի անհատ, մի հիմնարկութիւն, որ մտածէր հոգ տանելու այս խուլ անկիւնի մասին։

Մարդու զարմանքը մասամբ փարատւում է, երբ տեսնում է սրանց քաղաքը։

Մի քանի տարի առաջ կարծում էի, որ Գրոզն ու Ղզլարի և Արմաւրի հետ ոչ մի քաղաք Կովկասում չի կարող մրցել իւր ցեխով ու փոշով, բայց այժմ հաստատ համոզուած եմ, որ այս կողմից Ալէքսանդրապոլը մրցակից չի ունենայ երկար տարիներ…

Ինձ չէի կարող երևակայել, որ մի քաղաք և այն ոչ պարսկական, ուր փողոցները աղբանոցների տեղ ծառայէին։

Բազմիցս ականատես եմ եղել, ինչպէս քաղաքացին, առանց քաշուելու, փողոց է շպրտում իւր աղտեղութիւնները, երեխաներին փողոցում նստեցնում…

Փողոցներ կան, որտեղից անցնելիս՝ սախպուած թաշկինակը բերանը կը տանէք և կը փութացնէք Ձեր քայլերը… Իսկ կառքով շրջելու համար՝ հարկաւոր է մեծ քաջութիւն թէ փողոցների խորդ ու բորդութեան և թէ անտանելի ցեխի պատճառով։

Քաղաքում արտաքնոցներին կից ջրհորները ուղղակի զարմանք են պատճառում, իսկ գիւղերում աղբիւրներին կից գերեզմանատները առիթ են տալիս կարծելու, որ թերևս այս մարդիկ, շնորհիւ իրենց մեռելապաշտութեան, կարծում են, որ իրենց համար աւելի օգտակար կը լինի խմելու այն ջուրը, որ մեռածների փոշին է պարունակում իւր մէջ…

Եթէ ասեմ, որ 120 գիւղում ոչ մի բաղնիս չտեսայ, կարծեմ ոչ ոքի չեմ զարմացնի, որովհետև այս մի ընդհանուր բացասական երևոյթ է մեր բոլոր գիւղերի համար։ Կաշուի գործունէութիւնը և առողջապահութիւնը ոչ մի գին չունի մեր գիւղացու համար և այս կողմից նա աւելի ստոր է ոչ միայն դարեր առաջ ապրող հովմէացիներից, մալականներից ու սուբբոտնիկներից (շաբաթապահ)։

Բժ. Ա. Տէր-Յովհաննիսեան

---

## ՍԱՍՈՒՆՑԻ ՈՐԲԵՐԸ

### (Իմ այցելութիւնը)

Մի ամբողջ տարի հայրենակից մը տեսնելու կարօտը կայրէր զիս. լսած էի, որ հայրենիքէս—Սասունէն մօտ 8—9 հարիւր հոգի ազատուածներ կան. հակառակ ցանկութիւններուս դեռ չէի կարողացեր տեսնել անոնցմէ մէկն ու մէկին, դեռ չէի լսել իրականութիւնը իմ աչերած, խոպանացած ծննդավայրէս։ Լսեցի, որ ազատուած սասունցի որբերը բերուած են Աղէքսանդրապոլ, վրճռեցի երթալ, տեսնելու իմ դժբաղդ հայրենիքիս թշուառ բեկորները. ու գնացի…։ Կերևակայեմ այդ խեղճուկ որբուկները, որ մի ամբողջ տարի ապրած են ամենադժնդակ պայմաններու մէջ, իսկ երբ այսօր բաղդի բերմամբ ընկած են անծանօթ, բայց ազատ քաղաքի մէջ՝ ինչ հոգեկան ապրումներ ունեն, ինչ յուզիչ պատկեր կը ներկայացնեն։ Կը խորհեմ թէ ինչպէս պիտի կարողանամ զսպել ներքին յուզմունքս ի տես այդ թշուառ որբուկներուն… Սակայն երևակայածիս ու խորհածիս բոլորովին հակառակին կը հանդպեմ։ Դեռ որբանոցի շրջափակէն դուրս կը լսեմ անոնց ուրախ, կենսունակ քրքիջն ու աղմուկը։ Կը մտնեմ որբանոցի բակը և աստիճաններով վեր կը բարձրանամ, աստիճաններու գլուխ կանգնած մի քանի երեխաները ետ կը քաշուեն ակնածանօք։ Ուշի ուշով չորս կողմս կը դիտեմ մօտիկէն ծանօթ մը տեսնելու, յանկարծ մէկը վզովս կը փաթաթուի. կըզգամ երեսիս վառ կարօտ համբոյրներ. պզտիկ եղբայրս է… Այդքան բաւական էր որ բոլորի ուշադրութիւնը գրաւէի. ամեն կողմէն կը վազեն, կը շրջապատեն զիս, մի քանի ծանօթ դէմքեր դէմս կելնեն և ձեռք կերկարացնեն ինձ բարևելու։ Բոլորն ալ կ՛ըզգան որ իրենց շատ մօտիկ հայրենակից մ՛ են շրջապատած։ Ամենքի դէմքը կը փայլի բերկրանքի ժպիտով մը. անոնց վառ, առնական աչքերու մէջ—որոնք յառած են դէպ ինձ—կը կարդամ կամք ու տոկունութիւն։ Բոլորն ալ ուրախ սպասողական վիճակի մէջ են. ինչ-որ բան մը կը նկատեն, կը սպասեն, որ ես լաւ լուր մը տամ, մխիթարական բան մը ըսեմ իրենց, բայց ես հազիւ կարող եմ ներքին յուզմունքս զսպել։

Արհաւիրքի, թշուառութեան ոչ մի հետք չը կայ անոնց վրայ. տեսնողը չի կարող երևակայել, որ անոնք եկած են զուլումի երկրէն, տեսած են ծնողներու անգթաբար խողխողուիլը, մի ամբողջ տարի ապրած են ձիւկներու մէջ, ժեռեյներու հետ կողք կողքի, կերած են ամեն ինչ, տեսած ու կրած են անպատում զուլում, իսկ այսօր—այդպէս ուրախ, այդպէս կայտառ…։

Երեք օր ապրեցի փոքրիկ հայրենակիցներուս հետ, միայն մի փոքրիկ տարբերութիւն գտայ. անոնք դարձեր են մի քիչ երազկոտ և կորսնցուցեր են իրենց համարձակութենէն մաս մը, ուրիշ ոչինչ։

Հետաքրքրուեցայ նոցա կեանքով. մի քանիս պատմեցին իրենց տեսածը ու իրենց գլխէն անցածը, սարսափեցուցիչ, ահարկու պատմութիւններ… Նոցանէ ամեն մէկը ունի իր ուրոյն հետաքրքրական պատմութիւնը, բոլորովին տարբեր իրարմէ։

Գոհ էին իրենց ներկայ կեանքէն, միայն կը բողոքեն թէ. «Ինչու մեզի դաս չեն տար, չեն սովորեցներ. եթէ միայն հաց ուտեցնելու համար հոս բերին, մենք այնտեղ ալ կրնայինք հաց ճարել»։ Համոզեցի, որ շուտով կըսկսեն ձեր պարապմունքները. անհոգ մնացէք։

Գ. Երիցեան

---

## ԳԱԻԱՌ

### ԱԽԱԼՔԱԼԱԿԻ ՈՐԲԱՆՈՑԸ

Ամսիս 2-ին Ախալքալակ հասան 88 որբ—35 աղջիկ, 53 տղայ, 12 որբ էլ հիւանդութեան պատճառով մնացել են Ալէքսանդրապոլում։ Որբերից ամենամեծի տարիքը 16—է, ամենափոքրինը՝ 3. բոլորն էլ Մշի դաշտից են. մեծամասնութիւնը Ցրոն գիւղից։ Այժմ տեղաւորուած են Ախալքալակի հ. ծխ. դպրոցում։

Որբերի սնունդը.—Կերակրւում են օրական 3 անգամ. նախաճաշին և ընթրիքին տանում են թէյ, հաց ու պանիր. ճաշին մի տեսակ մսեղէն կամ իւղեղէն, մրգեղէն շաբաթական 2—3 անգամ. պասուց կերակուր ոչ մի անգամ չի տրւում, ճաշում են առանձին-առանձին։

Մաքրութիւնը.—Որբերը մեղ մօտ հասնելուն պէս ստացան նոր ճերմակեղէն, ամառնային զրսի հագուստ, գլխարկներ և

կօշիկներ (չուստ), բոլորը միատեսակ· գուլպաները պիտի հայթհայթուին գիւղերից ծրիապէս։ Ճերմակեղէնները փոխում են շաբաթական մի անգամ, շուտ-շուտ բաղնիք են գնում։ Իւրաքանչիւր որբը ունի իւր առանձին մահճակալը· ներքնակներն և բարձերը խոտից են· վերմակները բրդից· ներքնակների վրայ փռւում են ծածկոցներ։ Ննջարանը մի մեծ սրահ է· իր կարգով-սարքով և մաքրութեամբ լաւ տպաւորութիւն է թողնում։

Առողջութիւնը.—Որբերի դէմքից երևում է, որ առողջութիւննին լաւ է, միայն 20 որբ բոր հիւանդութիւն ունին, որ անցնելու վրայ է· մի քանիսի գլուխները վէրքեր ունին։ Հիւանդներին դարմանում և բժշկում է Քաղաքների Միութիւնը։

Ուսման խնդիրը.—Որբերից միայն 8—9 հոգի գրագէտ են· 3 փոքրիկ ապրելով քիւրդերի մէջ, մոռացել են մայրենի լեզուն, խօսում են քրդերէն։ 60-ից աւելին դպրոցականի հասակի են։ Սոքա պիտի սովորեն մեր քաղաքի ծխ. դպրոցի աշակերտների հետ առանձին բաժանմունքներում։

Որբերի հոգատարութիւնը իր վրայ է վերցրել... Կ. Հ. Բ. Ընկ-թեան տեղիս ճիւղի վարչութիւնը։ Մեր քաղաքի հասարակութիւնը գուրգուրանքով է վերաբերւում որբերին։

Որբանոցի անմիջական հսկողութեան համար կայ 7 հոգուց բաղկացած օրիորդների և տիկինների մի խումբ· ընդհանուր վերահսկիչն է օր. Սոնեա Դաւթեան։ Բոլոր ծառայողները ստանում են 40—15 ռ. ամսական։ Կան խոհարարներ և լուացարարներ։

17 յուլիսի. Տ. Մահլէպաշեան

## ՔԱՐՎԱՆՍԱՐԱՅԻ ՈՐԲԱՆՈՑԸ

Ղազախի շրջանի գաղթ. որբ երեխաների համար բացուած այս որբանոցը թեակոխեց իր հինգ ամսեայ շրջանը։

Սկզբում շրջանի գիւղերից հաւաքուեցին մօտ 50 գաղթական որբ, որոնք շատ խորթ էին նայում որբանոցին· մեծ մասը կամաց կամաց խոյս տուեց որբանոցից՝ հաւատալով թէ իրենց պիտի կտրեն, հեռացնեն իրենց սիրելիներից։

Որբերի այդ թուի վրայ աւելացաւ Դիլիջանից երկու անգամ եկածները 54 և 28 հոգի, որոնք միւսների կողքին, տեղաւորուեցին ընկերութեան սեփական շէնքում և սրա մօտիկ վարձուած սենեակներում։ Որբերի 132 սկզբնական թուից այժմ մնացել է 106։

Որբանոցը կառավարում են 10 անձ. կառավարչուհին է տիկին Ն. Տէր-Պօղոսեանը, իսկ օգնականը՝ օր. Երանուհի Եղիլեանը։ Դաստիարակչուհին է օր. Հ. Մանուկեանը, որ վերջերս եկած է և կարծես աշխատում է իր պարտականութիւնը լիովին կատարել։

Կայ երկու լուացարարուհի (գաղթ.), երեք հսկող օգնականուհի (2. գաղթ.) և խոհարար իր օգնականով։

Հագուստների, անկողինների և ննջարանների մաքրութեան մասին խօսք չկայ· շաբաթական 1—2 անգամ կը փոխուի որբերի շորերը· իւրաքանչիւր որբին կայ առանձին մահճակալ, իրենց բոլոր սարքով։

Ապրելակերպ.—Որբերին օրականերեք անգամ կը տրուի սնունդ, փոքրերին երբեմն չորս—այն էլ շատ առատ, առաւօտ-երեկոյ թէյ, հաց, երեկոն պանիր· շաբաթական մէկ կամ երբեմն երկու անգամ մսով կերակուր, իսկ մնացած օրերը լոբի և այլն պաս աւուր կերակուրներ· կաթը շատ քիչ անգամ է պատահում։

Առողջապահութիւն.—Սկիզբներին որբանոցում հիւանդութեան նշոյլ անգամ չկար, վերջերս երեխաների մէջ երևաց աչքի ցաւ, բայց շուտ անհետացաւ։ Այժմ հիւանդների թիւը տասնումէկ է, որոնք քոս և բկացաւ ունին։

Բժիշկն է պ. Խ. Եյերջեան, որ իր այցելութեամբ միշտ սփոփում է որբերին։

Դաստիարակութիւն.—Դպրոց յաճախող որբերը 30—35 հոգի են, որոնց դաստիարակութիւնը յանձնուած էր տեղիս գաղթական ուսուցչին, իսկ այժմ եկած է առանձին դաստիարակչուհի։

Անցորդ

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է յօգուտ փախստականների.

1) ԹԻՖԼԻՍԻ Փոխադ. Վարկի Ը-թեան. ծառայողներից 14 ռ. 30 կ.

2) ԽԱՐԿՈՎԻ Հայ ուսան. բիւրոյից, Շմաւոն Յարութիւնեանի միջոցով 175 ռ.

3) ԽԱԲԱՐՈՎՍԿԱՅԻՑ—Հայ գերիններից, Լևոն Պապովեանի միջոցով 102 ռ. 50 կ.

4) ԹԻՖԼԻՍ, պ. Լևոն Փրիդոնեանից 1915—16 դպրոցական տար. դպրոցական նպաստ 150 ռ.։

### ՃԻՒՂԵՐ

ՏՈԽԱՊՍԷԻ ճիւղի Վարչութեան անդամներ ընտրուել են—նախագահ՝ Ա. Բարախանեան, փոխ-նախագահ՝ Ս. Սուլխանեան, քարտուղար՝ Ս. Խ. Մելիքեան, գանձապահ՝ Ե. Հեքիմեան և Մ. Զոհրաբեան։

* * *

Նոր Բայազէդի շրջանի Ալափարս գիւղի հասարակութիւնը դիմելով Կ. Հ. Բ. Ընկ. Խորհրդին, խնդրել է թոյլտուութիւն ճիւղ բանալու յիշեալ գիւղում։

* * *

Կ. Հ. Բ. Ըն-թեան Վերին-Ագուլիսի ճիւղի Վարչութիւնն այսու բարոյական պարտք է զգում հաղորդելու, որ այս տարի խորագոյն շնորհակալութեամբ մինչև այսօր ստացուած են հետևեալ միանուագ նուէրները.—

Մեծ պ. պ. Սարգիս Միքայէլեանից, Մոսկուայից, իւր հանգ. դստեր՝ Սաթենիկի յիշատակին—100 ռ., Յ. Սարգ. Սուլխանեանցից, Ջուլֆայից, իւր հանգ. հօր յիշատակին—100 ռ., Քրիստ. Ալէքս. Սալանեանցից, Բագուից, իւր հանգ. հօր յիշատակին—100 ռ., Մեծ. տիկին Թամիզար և պ. Մամիկոն Յակոբեաններից, Մոսկուայից, հանգ. Ալէքսան Յակոբեանի յիշատակին 100 ռ., Հանգուցեալ Սարգիս Յակոբեանի ժառանգներից, Մոսկուայից, իրանց հանգ. հօր յիշատակին—50 ռ., Հայկ Կարապետեան Կոստանդինեանից, Բէնդեր-Գեազից (Պարսկաստան), ինքնայօժար 10 ռ., Ընդամենը 460 ռ.

Հրաւիրում ենք օտարաբնակ Ագուլեցիների բարի ուշադրութիւնը։ Նախագահ Վարչութեան՝ Ա. Տէրեան, Անդամ-Գանձապահ՝ Գր. Ղազարեանց։

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ
### ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

Ստաւրոպոլից—Տէր-Զաքարեանից

Գրաւուած են Ստաւրոպոլում երկաթուղուն յանձնուած 15 վագոն և Պետրոգրադայում 10 վագոն ալիւր։ Գնացի Եկատերինոդար Դանիլևսկու մօտ՝ բացատրեցի, որ ալիւրը պատկանում է Ընկերութեանը. չի համաձայնում ազատել գրաւումից. խնդրում եմ դիմեցէք գեներալ Թամամշեանին. թող միջնորդէ ազատելու և ապագայում ապահովելու այդպիսի դէպքերից։

—

Իգդիր—Լիազոր Տիգրանից

Բայազիտի պահեստը բացուած է. ապրանքները մօտ

օրերում կ'ստացուի. Բայազիդի շրջանի գաղթականութիւնը բաժին չի ստանում

—

Իգդիր—Բայազիդի պահեստի կառավարիչ Կոստանջեանից

Բայազիդի շրջանում կան 2,300 հայ. այլեւ եզիդիներ. անհրաժեշտ է երեք վագոն ալիւր, 200 պուդ շաքար, հարիւր պուդ սապոն. հոգացէք և փոխադրութեան միջոցների մասին։

—

X—Գրիգորեանից

Տեղ պատրաստեցէք ընդունելու 240 որբ, որոնցից 186-ը ուղարկեցինք Խնուսից Սարիղամիշ, իսկ մնացեալներին կուղարկենք մօտ օրերս։

—

Նիւ-Եօրք—ամերիկական Կոմիտէի անդամ Կիրարեանից

Հեռագրեցէք, եթէ հարկաւոր են բժիշկներ և դեղորայք՝ մենք կուղարկենք մեր հաշուով։ Որտե՞ղ է բժիշկ Կրեսսին։

# Ք ր ո ն ի կ ո ն

Նահանգապետների և շրջանապետների համագումարը, որ կայացաւ Թիֆլիսում՝ Նախագահութեամբ Փոխարքայի քաղաքացիական մասի օգնական իշխան Օրլովի, փակուեց անցեալ շաբաթ՝ մշակելով մի շարք միջոցներ պարենաւորման գործի և դաշտերի ցանքսի մասին։

***

Թիֆլիսի նահանգապետը յայտարարել է.—

Նորին Կայսերական Բարձրութիւն Օգոստափառ Փոխարքայի թոյլտուութեամբ, մանուֆակտուրային, գալանտերի եայլն շատ ծախուող և քաղաք բերուող ապրանքների վրայ սակագին հաստատելու համար ինձ մօտ հիմնւում է խառն յանձնաժողով վաճառականութեան, մամուլի և քաղ. ինքնավարութեան ներկայացուցիչներից։ Այն պատճառով, որ բոլոր այս ապրանքների գները Թիֆլիսում լիովին կախուած են այն գներից, որ սահմանուած են արտադրութեան տեղում, ըստ որում այդ գները այնտեղ միշտ փոփոխւում են, յանձնաժողովը պէտք է վերաքննի և փոփոխի իր սահմանած Թիֆլիսի սակագինը իւրաքանչիւր ամիս, արտադրութեան վայրերի գների փոփոխութեանը նայելով։ Այդպիսի ապրանքների գների շահագիտական (սպեկուլեատիւ) բարձրացման մասին իմ ստացած բոլոր յայտարարութիւնները կը քննուեն այդ յանձնաժողովի կողմից։

Նոյնպէս և պարենի անհրաժեշտ մթերքների և առարկաների վրայ պէտք է հաստատուեն և վերաքննուեն, ինչպէս և առաջ, գոյութիւն ունեցող կանոնադրութեան համաձայն, քաղ. վարչութեանը կից պարենաւորման կոմիտէի կողմից։

***

Մսեղէն կերակուրների և առ հասարակ մսի գործածութիւնը չափաւորելու օրէնսդրութիւնը արդէն Բարձրագոյնս հաստատուել է և ոյժի մէջ է մտել ամբողջ պետութեան համար։ Այդ մասին հաղորդուել է նաև Թիֆլիսի քաղաքային վարչութեան և առաջարկուել է իմացնելու բոլոր մսավաճառներին, ակումբներին, ճաշարաններին և այլնս Թիֆլիսում, ինչպէս և ամեն տեղ, միս չի ծախուիլ և չի գործածուիլ շաբաթուայ մէջ երեք օր։

***

Մսի սակագնի մասին՝ պարենաւորման յանձնաժողովի անդամները յայտնեցին, որ գոյութիւն ունեցող սակագինը ոչ միայն չը պիտի բարձրացնել, այլ որ մինչև իսկ պիտի իջեցնել, որովհետև այս ժամանակներում անասունների գները իջնում են։

***

Թիֆլիսում խուզարկութիւններ են տեղի ունենում՝ գտնելու համար այս ամսի սկզբներին եղած թալանի ապրանքները։ Արդէն ձերբակալուած են մի քանի հոգի։

***

Առաջիկայ զինուորակոչին Թիֆլիսի ելէկտրաքարշի 900 ծառայողներից մօտաւորապէս 500 հոգին զինուորացուներ են։ Քաղաքը մտադիր է դրանց մի նուազ մասը ժամանակի ընթացքում լրացնել կին-ծառայողներով, ինչպէս եղել է Մոսկուայում և Պետրոգրադում։

***

Յուլիսի 29-ից բացուելու է Միքայէլեան փողոցում Կովկասեան բանկի առաջին բաժանմունքը։

***

Պարսից Շահը փախստականների գլխաւոր լիազօր գեներալ Թամամշեանին շնորհել է Առիւծի և Արևի I կարգի շքանշան։

***

Մօտ ժամանակներս քաղ. վարչութիւնը ծառայութեան ընդունեց, իբրև առևտր.-տնտեսութեան ագէնտ, տիկին Կարովին, փորձելու համար, թէ կանայք որքան ընդունակ են այդ օրինակ ծառայութիւնների։ Քանի որ տիկ. Կարովը իմանում էր տեղական չորս լեզու (վրացերէն, թուրքերէն, ռուսերէն և հայերէն), ուստի և նրան յանձնեցին Մէյդանի շրջանը, ուր հաւաքւում են բոլոր ցեղերից, որոնք խօսում են տեղական բոլոր լեզուներով։ Փորձը երևաց շատ յաջող։ Տիկ. Կարովը շատ լաւ վարում է իր գործը և հանդիսանում է ամենագործունեայ ագէնտ։

***

Խրխզների զինուորական աշխատանքների համար զօրակոչի առթիւ, նրանց բանիմացները (ինտելլիգենցիան) մի ժողով է գումարել, ուր և որոշուած է դիմել Թագաւոր Կայսրին հետևեալ հեռագրով՝ «Մենք, Տուրգայի շրջանի խրխզներս պեղման և ուրիշ նման ստորին աշխատանքների համար կանչուելը մեզ համար անպատւութիւն ենք համարում. մենք հին ժամանակներից ի վեր ձիու վրայ խաղ անող ժողովուրդ ենք. ուստի մեզ հարկ էր իրական զինուորական ծառայութեան կանչել կռւող գնդերի նման կազմակերպելով մեզ»։

***

Յուլիսի 25-ին քաղաքագլխի փոխանորդ իշխ. Արղութեան-Երկայնաբազուկի նախագահութեամբ կայացաւ ռատնիկներին զօրակոչի ենթարկուողներին ժամանակ տուող կոմիտէի նիստը։ Մինչև 1917 թ. յունուարի 1-ը ժամանակամիջոց է տրուած՝ Վախնեանսկու թուջի ձուլարանից 7 հոգու, Թայիրեանի, Ալիխանեանի և Տոլլէի սապոնի գործարանից 11 հոգու, գեղօրայքի համար բոյսեր հաւաքող կազմակերպութիւնից 9 հոգու, զինուորական-արդիւնաբերական կոմիտէի մատակարար ինժեներ Ի. Ա. Փանդոյեի պահեստից 2 հոգու, տեղական չորս ռուսերէն թերթերի խմբագրական կազմից և տպարանական ծառայողներից՝ 28 հոգու, իսկ «Տաուղ» ցեմենտի գործարանի դիմումը մերժուած է։

***

Աւստրօ-գերմանական ճակատում ռուսների տարած նոր յաղթութեան առթիւ, չորեքշաբթի, յուլիսի 27-ին, քաղաքը զարդարուած էր դրօշակներով։

***

Հայոց Գիւղատնտեսական Ընկերութիւնը մի շրջաբերական է ուղարկել այն գիւղերի լիազօրներին, որոնք դիմել էին ցորեն և ալիւր ստանալու համար։ Շրջաբերականում ասուած է. Գիւղատնտեսական Ը-թեան վարչութիւնը տեղեկանալով, որ հակառակ իր դիմումների մինչև հիմա չեն ուղարկուած հայ գիւղական համայնքի համար գնած ցորենն ու ալիւրը Զելրաս, Ուստ-Լաբա և Ստանիչնայա կայարաններից, պաշտօնապէս հրաժարուեց այ-

սուհետև ստանալ ապրանքը, ենթադրելով, որ նրանք չորս ամսուայ ընթացքում մնալով յիշուած կայարաններում, կարող են փչացած լինել և անպէտք դարձած գործածութեան համար։ Այդ պատճառով էլ Ընկերութեան վարչութիւնը խնդրում է լիազօրներից, որ անյապաղ վերադարձնեն դուբլիկատները իրեն և ստանան Գիւղատնտեսական Ընկ. այդ նպատակի համար տուած գումարները։

* * *

Քաղաքի բարակներն են տարուել խոլերայով կասկածելի երկու հիւանդ։

* * *

Թիֆլիսի թեմի առաջնորդ Մեսրոպ եպ. նշանակուած է Աստրախանի թեմը, իսկ Աստրախանի առաջնորդ Մխիթար եպիսկոպոսը—Թիֆլիս։

## Ամենայն Հայոց Կաթող. Թիֆլիսում

Յուլիսի 17-ին Պարիզից Նուբար-փաշան հեռագրում է Ամենայն Հայոց Կաթողիկոսին հետևեալը. «Բաղդաւոր եմ յայտնել Ձերդ Սրբութեան, որ բացառապէս հայութեան բարեկամներից, խորհրդարանի ականաւոր և ֆրանսիական ինստիտուտի նշանաւոր անդամներից մօտ օրերս կազմակերպուեց մի յանձնաժողով, որի նպատակն է Հայկական Դատի պաշտպանութիւնը»։

—

Յուլիսի 28-ին առաւօտեան ժամը 11-ին Ամենայն Հայոց Կաթողիկոսին ներկայացաւ Կովկասի Փոխարքայի դիւանատան տեսուչ Կոլոգրիւովը և յանձնեց Փոխարքայի ինքնագիր մի գրութիւնը, որ պատասխան է Կաթողիկոսի արած դիմումներին։ Նոյն օրը, Կովկասի Փոխարքայի հրաւէրով ցերեկուայ ժամը 3-ին Ամենայն Հայոց Կաթողիկոսը՝ ուղեկցութեամբ Մեսրոպ եպիսկոպոսի, Տիրայր, Գէորգ և Արտակ վարդապետների մեկնեց Կոջոր՝ Փոխարքայի հետ տեսակցելու։ Կաթողիկոսը մեկնեց Փոխարքայի ուղարկած ինքնաշարժ կառքով։

## Արտաքին տեսութիւն

Զուիցերիայում, ինչպէս հաղորդում է «Մ ա թ է ն» թերթը, յայտնագործուած է մի լրտեսական լուրջ ընկերութիւն։ Լօքարնօ քաղաքի մէջ, մեծ մասամբ գերմանացիներից կազմուած և մեծ ճիւղաւորութիւններով հիմնուած է եղել մի ընկերութիւն, որի նպատակն է եղել Գերմանիային ուղարկել պարբերաբար՝ Իտալիոյ մասին հաւաքուած բոլոր տեղեկութիւնները։

Տեղի են ունեցել ձերբակալութիւններ։

—

Բուդապեշտի յայտնի պաշտօնական թերթը «Փէշտի Հիրլափ», Աւստրիոյ արքհիդուքս Ֆրանսուա-Ֆերդինանդի մահուան տարեդարձի առիթով լոյս է ընծայել մի յօդուած, որ բովանդակում է հետաքրքիր պարզաբանութիւններ։

Արքհիդուքսի մահը չի եղել պատերազմի բուն պատճառը— յայտարարում է թերթը. սպանութիւնը եղել է լոկ պատրուակ՝ արդէն վաղուց ծրագրուած կռիւը սկսելու համար։ Արդէն Աւստրիա-Հունգարիայի կառավարող մարդիկ մի քանի տարուց ի վեր եռանդուն կերպով պատրաստւում էին, համաձայնութեան էին եկել դաշնակից գերմանացիների հետ և օրէցօր սպասում էին եւրոպական ներկայ պատերազմի բռնկմանը։

—

Ցիւրիխից հաղորդում են, որ Գերմանիան Աւստր ու Հունգարիայի հետ կնքել է մաքսային պայմանագիր, որի համաձայն Աւստրիան տնտեսապէս դառնում է Գերմանիային ստրուկ։

—

Ամերիկայի «Ի ն ք ն ա վ ա ր Հ ա յ ա ս տ ա ն» թերթի մէջ տպուած են հետևեալ տեղեկութիւնները Կ. Պոլսի ներքին կեանքի մասին. Օտարազգի մի վաճառական, որ մեծ դժուարութեամբ կարողացած է Կ. Պոլսէն վերջերս Բուլգարիոյ ճամբով Ռումանիա անցնել, հետևեալ տեղեկութիւնները հաղորդած է.

«Ո՛չ միայն քրիստոնեայ բնակչութեանց կացութիւնը տաժանելի է, այլ և թիւրքերու վիճակն ալ սարսափելի է։

«Առաջները բոլոր լրտեսական ցանցերն և եղեռնական միջոցները քրիստոնեաներուն համար էին... Բայց այս պահուս «Իթթիհադի» չարագործ վոհմակը սկսած է թիւրք ժողովուրդին ալ ծծել. և ամենափոքրիկ կասկած պատճառ բռնելով գիշերանց Սարայ-Բուրնուի ծովափէն քաշկռտում... Հիմակ ընտանեկան սրբութիւն և կամ նամէհրամի նուիրականութիւն ասուած բանն էլ չը կայ։ Մէկը ճիչ հանե՛ց—կուզէ մանկամարդ կին լինի, կուզէ անչափահաս տղայ—իսկոյն պատերազմական ատեանին առջև է հանւում և «Մէնֆի» գրկուեցաւ ասելով վերջացնում։ Բացարձակապէս արգելուած է իսլամ կիներուն, որ քրիստոնեայ կնոջ հետ խօսեն, այսինքն՝ անոր դռան առջևէն չանցնին, անոր պատուհանին աչք չըդարձնեն։ Երևակայեցէք թէ ինչ անտանելի վիճակ է այն իսլամ ու քրիստոնեայ կիներուն վիճակը, երբ նոքա մի փռան առջև կեցած են ժամերով և մի պատառ հաց առնելու են սպասում։ Սոցա նայուածքն անգամ իրարու հանդիպելը կասկածի տեղի է տալի և յանցանք է համարւում։

«Գալով սղութեան՝ այդ ամենուդ յայտնի է։ Թիւրքիոյ մէջ սով է տիրում և, Աստուած մի արասցէ, քանի ամիսներ էլ եթէ շարունակուի, անպատճառ օրական հազարէն աւելի մարդ պիտի մեռնի։ Այսօր կարող եմ հաստատապէս ասել, թէ Կ. Պոլսի արուարձաններու մէջ հարիւրէն աւելի սովամահներ են լինում և հնդախտ (խոլերա) ասուածը պարզապէս անօթութենէ մեռնողներու պարագան է։ «Կ. Պոլսի մէջ հնդախտ կայ», գրած էին Ռումանիոյ թերթերը. այդ ճշմարիտ չէր. ստոյգը պիտի լինէր, եթէ ասէին, որ բովանդակ Թիւրքիոյ մէջ սով է տիրում և քիչ ատենէն հնդախտի զոհերէն շատ աւելի զոհեր պիտի ունենայ։

—

Ալբանացիների ապստամբութիւնը Աւստրիացիների և Բուլգարների դէմ՝ լուրջ կերպարանք է ստանում։ Զէնքերը ալբանացիք ստացել են իր ժամանակին՝ Աւստրիոյ գործակալներից։ Այժմ այդ իսկ զէնքերով ալբանացիները ոտքի են ելել նախկին բարեկամների դէմ, այրում են նրանց զօրանոցները, յարձակւում են զօրքի վրայ և կողոպտում ռազմամթերքներն ու պաշարեղէնը։

—

Գերմանիոյ համալսարանների ուսուցչապետները հրապարակ են իջել և առաջարկում են անմիջապէս խաղաղութիւն կնքել, որովհետև ժողովուրդը նիւթապէս շատ ծանր դրութեան մէջ է և այլևս դիմանալ չի կարող։

—

Մսի պակասութեան պատճառով Գերմանիայում իշխանութիւնները թոյլատրել են սպանդանոցներ բանալ՝ շան միս ծախելու համար։

—

Ռումանիայի հանդէս գալը յօգուտ դաշնակիցների՝ սպասւում է օրէցօր։ Ռումինիան կարող է հանել մօտ 800,000-անոց մի կազմ և պատրաստ բանակ։ Նրան ծովի կողմից կօժակցի Սև ծովի ռուս նաւատորմիղը։ Ռումանիոյ զէնքը կուղղուի գլխաւորապէս Բուլգարիոյ դէմ, որն այդպիսով կը գտնուի երկու կրակի միջև։ Հազիւ թէ Գերմանիան կարողանայ սրան փրկել։

—

Միացեալ Նահանգների Բեռլինի դեսպանը հաղորդում է իր կառավարութեան, որ օգոստոսի 1-ից սկսած Գերմանիայից

գուրս գալը բոլորովին արգիլուած է՝ բացառութեամբ ծայրայեղ անհրաժեշտ դէպքերի։

—

Գերմանիայում մեծ պատրաստութիւն են տեսնում Գերմանական հողերի պաշտպանութեան համար։

—

Բուխարեստից հաղորդում են, որ Բալկանեան ռազմաբեմում պատրաստւում են մեծ ճակատամարտներ։ Դաշնակիցները ծրագրում են Մոնաստիրը գրաւելու, ուր Բոլգարները մեծ ուժեր են կենտրոնացնելու։

—

Անգլիացոց սուզանաւը Դարդանելի նեղուցը մտնելով ռմբակոծել է Պոլսի և Իշխանաց կղզիների դիմացը գտնուող Պենդիկ քաղաքի արուարձանները։

—

Պարիզից հաղորդում է, որ Սիրիայից և Իրաքից հազարաւոր արաբներ գնացել միացել են Մէքքայի շէրիֆի բանակին։ Թիւրքական բանակից փախել են բազմաթիւ արաբ սպաներ և իրենց ծառայութիւնը առաջարկել շէրիֆին։

—

Հրատարակուել է Եգիպտոսում գտնուող անգլիացոց զօրքերի գլխաւոր հրամանատարի հետևեալ հաղորդագրութիւնը. «Յուլիսի 22-ի կէս գիշերին թիւրքերը մինչև 19,000 զինուորի ոյժով յարձակուեցին Թորմանի մօտ մեր դիրքերի վրայ, Պորտ-Սայիդից արևելք, 7—8 մղոն ճակտի վրայ։ Յուլիսի 22-ի երեկոյեան ըստ առաջնոյն մեր ձեռքումն էին ամրացուած դիրքերը, իսկ հարաւային թևի վրայ կռիւը ծաւալւում էր մեր օգտին։ Այստեղ մենք առանք մօտ 500 գերի։ Նաւատորմիղը գնահատելի աջակցութիւն էր ցոյց տալիս զօրքերին՝ գործելով Տինա ծոցից»։ Ձեկուցման ուղարկուած ժամանակ կռիւը շարունակւում էր։ Ցերեկով ջերմաչափը 100 աստիճան էր ցոյց տալիս, ըստ Ֆարենհայտի։

—

Ռուս մի թերթ հաղորդում է, որ անգլիացիք իրենց յարձակման առաջին երկու շաբաթում արձակել են մօտ 10 միլիոն ռումբ, այսինքն՝ օրը կէս միլիոնից աւելի։ Հաշուի առնուած չեն ձեռքի զանազան տեսակի ռումբերը։ Անգլիացիք յոյս ունեն ռումբերի թիւը կրկնապատկել դեռ ևս։

—

Պարսից, Ռուսաց և Անգլիացոց կառավարութիւնների միջև փոխանակուած բանակցութիւնները վերջացան համաձայնութեամբ։ Այդ համաձայնութեամբ ամրապնդւում են երեք պետութիւնների բարեկամական յարաբերութիւնները։ Փոխադարձ շահերին վերաբերեալ հարցերը վճռուած են և այդ հարցերը գլխաւորապէս կապ ունեն Պարսկաստանի զինուորական և ելեմտական գործերի կանոնաւորման հետ։ Կարգ ու կանոնը երկրում լաւ պահպանելու համար, կազմակերպւում է Պարսկական զինուորական ոյժ։ Հիւսիսում պարսկական այրուձին կը կազմուի ռուս կրթիչների գործակցութեամբ։ Հարաւում բանակը կը կազմեն և կը կրթեն անգլիացի զինուորականները։ Կազմուած է նաև ելեմտական մի յանձնաժողով, որի անդամներից երկուսը պարսիկներ են, մէկը Ռուսիոյ, իսկ չորրորդը Անգլիոյ ներկայացուցիչները։ Յանձնաժողովին կը նախագահէ բելգիացի այն անձը, որ այժմ պետութեան գլխաւոր գանձապահն է։

—

Պատերազմի երկրորդ տարին լրանալու առթիւ Եգիպտոսի գլխաւոր քաղաքներում մեծ միտինգներ են կազմուել, ուր տեղի են ունեցել որոշումներ՝ յամառօրէն գործակցելու դաշնակիցներին մինչև կատարեալ յաղթանակը։

—

Իրլանդիայի փոխարքայ է նշանակուել նորից լորդ Ուիմբերնը, նախկին Փոխարքան։

Գերմանիայի արևելեան բոլոր բանակների ընդհանուր հրամանատար է նշանակուած ֆելդմարշալ յայտնի Գինդենբուրգը, որի ժողովրդականութիւնը շատ մեծ է։ Գերմանիայում հաւատացած են, որ այդ զօրավարը, որ Պրուսիան 1914-ին ազատելով ռուսների մուտքի սպառնալիքից, այժմ էլ ինքնինքը ցոյց կը տայ ռուսներին։

—

Սևաստոպոլից հաղորդում են, որ Ռումինիայից ստացուող տեղեկութիւնների համաձայն՝ ռուսաց վերջին յաղթութիւնները Հայաստանում ճնշող տպաւորութիւն են թողել Պոլսում։ Հասարակաց կարծիքը Թիւրքիան վերջնականապէս պարտուած է համարում։ Դժգոհութիւնն սկսում է մտնել զօրքերի շարքը, որոնք յուզւում և հաշտութիւն են պահանջում։

—

Կոնստանցայից հաղորդում են, որ կատարելապէս ստոյգ աղբիւրից ստացուած տեղեկութիւնների համաձայն՝ Գերմանիան 30,000 զօրք է ուղարկել Ռուսջուկ։

—

Բուխարեստի գերմանասէր լրագիրների ասելով, գերմանացոց դեսպանը իր կառավարութեան անունից բողոք է յայտնել ռումինական զօրքերի Աւստրիայի և Բուլղարիայի սահմանների վրայ կենտրոնացնելու դէմ։ Դեսպանը մատնանշել է, որ ռումին նոր զօրքերի կենտրոնացումը յիշեալ սահմաններում Գերմանիայի կողմից կընկալուի թշնամական քայլ։

—

Մոնղոլիայում նոր ապստամբութիւն է ծագել։ Տաւոնանֆուի մօտ կռիւ է տեղի ունեցել և կառավարութեան զօրքերը նահանջել են։

—

Բուխարեստից հեռագրում են, որ ռումին-բուլղարական սահմանների վրայ ամեն օր միջնադէպեր են պատահում։ Բուլղարները նորից փորձ են արել անցնելու Կորէյ կղզում, բայց ետ են քշուած ռումինացոց կրակով։ Այս միջադէպերի հետևանքով Բուխարեստից կարգադրուած է ուժեղացնել Ֆլամինդի գաւառի տեղապահ զօրքերի թիւը։

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ԵՐԵՔ ՎԱՒԵՐԱԳԻՐ

### ԽՆՈՒՍԻ ԳԱՅՄԱԳԱՄՈՒԹԵԱՆ ԴԻՒԱՆԻՑ

### Պ Ա Տ Ճ Է Ն.

Հայերու կրօնափոխութեան և կրօնափոխ եղողներու, կալուածի տիրանալու մասին կազմուելիք գործողութեան համար որոշուած և մասամբ ընդ. ապահովութ. տնօրէնի կողմէ կազմուած յօդուածներու ընդհ. ձեր ներքև գրուած է. ըստ պարունակութեան գործադրութիւնը Ձեզ կը յանձնարարուի, էֆէնդի։

28 հոկտ. 331

Ա. Չգաղթող առաջուց իրանց տեղերը բնակողներու կրօնափոխութիւնը կընդունուի։

Բ. Տեղահանութեան ժամանակ ճանապարհին մասնաւոր հրամանով մնացած և կամ ուշադրութենէ վրիպածները թէ իրանց բնակավայրերը վերադարձող և թէ որևէտեղ մնացածներուն կրօնափոխութիւնը նմանապէս կընդունուի։

Գ. Կրօնափոխութիւնը ըստ վերոգրեալի ընդունելի և կարելի եղողներու ապրանքը իրանց պէտք է ետ վերադարձուի և կանխիկի վերածուելու պարագային փոխարէնը պէտք է ետ տրուի։

Դ. Տեղահանութեան ժամանակ իրանց վայրերու մէջ մահմեդականներու հետ ամուսնացող կիներու և աղջիկներու գտնուած տեղերում երեսի վրայ թողած բնակարանները նրանց յատկացնել։

Ե. Դաւառի, գիւղի, թաղի համեմատ և կամ անձերու դըրնուած պարագային կրօնափոխութեան համար դիմողներուն, նայած մահմեդական ազգաբնակչութեան թուին, սրանց թիւը 100-ին 5 տոկոս չանցնելու պայմանաւ, աճելու է մահմեդական գիւղերու վրայ և ապա կրօնափոխութեան արարողութիւնը կատարելու է։

Զ. Չփոխադրուող և մնալու արտօնութիւն ունեցող երեխաներու իրանց ընտանիքէն ընկած բաժին ապրանքը քննուելէ յետոյ՝ ամբողջը կամ մի մասը իրանց ծախսելու պարագային կառավարութեան կողմէ ասոնց անտէր մնացած ապրանքներու փոխարէն կառավարութեան անունով արձանագրուած անշարժ կալուածներէն ժամանաւոր բան մը պիտի տրուի։

Խալիլ Զառուշի Միւդիրութեան
Թիւ 1192.

—

Կարևոր է, Միւդիր էֆէնդի

Բարձրագոյն վիլայէթէն հասնող 15 նոյեմբեր 331 թուակիր և 1010 համարով հրամանագրի պատճէնները նոյնութեամբ վերափոխադրուեցաւ, ըստ պարունակութեան պատշաճ գործադրութիւնը Ձեզ կը յանձնարարուի, Խնուսի գայմագամ Թահըր։

22 նոյեմբերի 1338.

### Օ Ր Ի Ն Ա Կ

Կարևոր է, Մասնաւոր, № 657

Ժողովուրդը դէպի ներսեր ղրկուած գիւղերէն ոմանց հայերը մահմեդականներու կողմէ պահուելը կը լսուի. կառավարութեան բարձրագոյն հրամանը ըլլալով, այն անհատները, որոնք հայերը իրանց տներու մէջ կը պահեն ու կը պաշտպանեն՝ իրանց տանը առջև պէտք է կախաղան բարձրանան և տունը պէտք է այրուի. ասոր համար ում որ հարկաւոր է, պատշաճ եղանակով մը իրանց պէտք է հասկացնել և տեղեկացնել։ Ոչ մի հայ չմնալուն վստահել և Ձեր կատարածներու մասին անընդհատ տեղեկացնել։ Կրօնափոխ եղած հայերն ևս պէտք է ղրկուեն. սրանք եթէ զինուորական ծառայութեան մէջ են գտնուում, անմիջապէս պէտք է փոխանորդութեանց հաղորդի և դատարանի յանձնելէ յետոյ, զինուորական ծառայութենէ դադրեցնել, իսկ եթէ քաղաքային պաշտօնեայ է, անմիջապէս հրաժարեցնել և զինուորական ատեանին յանձնել։

Խաչչաուշի միւդիրութեան

### ՄԻՒԴԻՐ ԷՖԷՆԴԻ

Ըստ երրորդ զօրաբանակի հրամանատարի տեղեկութեանց բարձր վիլայէթը հասած 12 յուլիսի 331 թուակիր և 512 համար ծածկագրի օրինակը վերև դրուեցաւ, հայերը իրանց տուներուն մէջ պահող և պաշտպանող տան տէրերը իրանց տանը դրան առջև պէտք է կախուեն, և տունը պէտք է այրուի. սոյն հրամանը հասկացնելու է ժողովրդին, և Ձեր շրջանի մէջ որչափ հայեր որ կը գտնուեն ամբողջութեամբ բռնել, հաւաքել և ղրկել. յետոյ շարունակ տեղեկութիւններ տալ դրա համար. ով որ չի լսեր կամ դիմադրութեան փորձ կընէ պատժոյ ենթարկել։ Հայրենիքի և ժողովրդի ապահովութիւնը այսպէս կը պահանջէ, ասիկա վերջին անգամ ըլլալով Ձեզ կը յայտարարուի։

Խնուսի գայմագամ Թահըր։

18 յուլիսի 1331 թ.

—

Պատճէն Կարևոր № 694

Մշոյ հիւսիսային արևելքէն սկսած՝ մէկ կողմէն Արածանին (Մուրատ գետ) և միւս կողմէն Վանայ լճի հիւսիսային ափով շրջապատուած և ի վերջոյ... ետ առնուած ընդարձակ տարածութեան մէջ թէև կանոնաւոր և բնակիչներով լեցուն հայի գիւղ չէ մնացեր, սակայն, այս կողմ այն կողմ բազմաթիւ հայ կիներ և երեխաներ ցանուած արտերու մէջ, և լեռներու վրայ ապաստանած խումբեր գտնուելով, սրանց (շարունակութիւնը չկարողացանք կարդալ) և քանի մ'անգամ ժամանաւոր հեռագրեր կարել են այս պատճառով քանի մը ալ կախուած է։

Բանակը շարունակ շարժման մէջ է և պատերազմով զբաղուած ըլլալու համար թիկունքում կատարուող այսպիսի դէպքերով զբաղուելու ոչ ժամանակ ունի և ոչ ալ մասնաւոր ուժ կարող է յատկացնել, հետևաբար Ա. ետ խլուած վայրերու մէջ անմիջապէս հարկ է հաստատել քաղաքային կառավարութիւն և ժանդարմներու անմիջական կազմ. Բ. հայ կիներու և երեխաներու վերաբերեալ գործադրել նմանօրինակ գործողութիւնը, Գ. աւազակները և խումբերը ժանդարմներու և տեղական ուժերու միջոցով անմիջապէս պատժելու համար պէտք է այդ հողամասերը խիստ քննութեան ենթարկել։ Դիմադրութիւն ցուցնողները զանց չընել և միջնորդութիւն անողները պատժելու համար մասնաւորապէս կը հաղորդուի։

ԽԱԼ ԶԱՌՈՒՇԻ
Միւդիրութեան

Յարգելի էֆէնդի.

Բարձր վիլայէթէն եկած և պատճէնը վերև փոխադրուած 21 յուլիսի 331 թուակիր և 571 համարով բարձր գրութիւնը բացատրութեամբ Ձեզ կը հաղորդուի և կը ղրկուի։ 21 յուլիսի 1331։

Խնուսի գայմագամ Թահըր։

---

## ՀԱՅԱՆՊԱՍՏ ՇԱՐԺՈՒՄՆԵՐ

### «ՖՐԱՆՍԻԱՆ—ՀԱՅԱՍՏԱՆԻՆ»

Պարիզում կազմուած «Ֆրանսիան—Հայաստանին» անունով յանձնաժողովը Վեհ. Կաթողիկոսին ուղղել է հետևեալ հեռագիրը.

«Ֆրանսիան—Հայաստանին» յանձնաժողովը, որ հենց նոր կազմել են հայ ժողովրդի ֆրանսացի բարեկամները, ուղարկում է Ձերդ Սրբութեան իր ջերմ համակրանքի արտայայտութիւնը դէպի քրիստոնէական հաւատի և քաղաքակրթութեան հերոսական մարտիրոս Հայաստանը և հաւաստացնում է Ձեզ իր անձնուիրութեան մասին դէպի դժբախտ և ազնիւ հայ ազգի գործը»։

Լէյգ, նախկին նախարար և պատգամաւորների ժողովի արտաքին գործոց յանձնաժողովի նախագահ։ Էլիէն Լամի, ֆրանսական ճեմարանի անդամ. Ֆլանդէն, ծերակոյտի անդամ. կոմս Դոնէ, ծերակոյտի անդամ. Դեբնիէ, պատգամաւոր, նախարարի օգնական և առևտրական տորմիղի յանձնաժողովի նախագահ. Ռաֆայէլ Ժորժ Լեվի, ֆրանսական ինստիտուտի անդամ. Շլիւմբերգեր, ինստիտուտի անդամ. Ժոզէֆ Ռէյնակ, նախկին պատգամաւոր. Մեհէ, Բոլէժ դը Ֆրանսի ուսուցչապետ, Բուրդինոն, լուսաւորութեան նախարար Պենլեւէի դիւանի կառավարիչ. Էսկոֆիէ, Կրեդի Լիոնի կառավարիչ. Գաբրիէլ Մուրէ, Կոմպինեի պալատի պահնորդ. Հենրիխ Կալոն, փաստաբան. Ռենեդէ Շաւան, գլխաւոր քարտուղար յանձնաժողովի և անօրէն «Ռեվիւ Ֆրանս Էտրանժէր» հանդէսի։

Ի պատասխան այս հեռագրին՝ Նորին Վեհափառութիւնը բարեհաճել է հեռագրով պատասխանել հետևեալը.

«Խիստ մերձ եմ ընդունում սրտիս Ֆրանս-Հայկական Յանձնաժողովի ականաւոր անդամների առ Իմ ազգը վկայած ջերմագին համակրութեանց արտայայտութիւնը։ Օրհնում եմ Յանձնաժողովդ և իր անդամներն ու մաղթում կատարեալ յաջողութիւն գործին, որ յանձն են առել նրանք վեհանձնօրէն։ Ցայս եմ տա-

ծում, որ նրանց անձուկրութիւնը և համակրութիւնները անզթաբար մարտիրոսացած Հայաստանի դատին՝ կը հասնեն իրենց առաջադրած նպատակին և Իմ ժողովուրդը ընդ միշտ երախտապարտ կը լինի նրանց, որոնք քրիստոնէաբար օգնութեան հասան թշուառութեան ժամանակ և լաւագոյն ապագայի յոյսը ներշնչեցին նրան։

Կրկին Իմ օրհնութիւնս ամենքին։ Աղօթում եմ առ Ամենաբարձեալը Ֆրանսիայի և դաշնակիցների յաղթութեան համար»։

—

Պարիզից հաղորդում են, որ սենատոր (ծերակուտական) Ֆլանդէրը, ջերմօրէն բողոք է յարուցել «Պ թ ի Պ ա ր ի զ ի է ն» թերթում երիտասարդ թիւրքերի ոճիրների դէմ. որ նրանք կոտորել են 700,000 հայ և անօթութիւնից մահացրել 50,000 լիբանանցի։ Այդ բողոքով Ֆլանդէրը դիմում է չէզոք պետութիւններին և հարց է տալիս թէ՝ արդեօք նրանք ինչ են մտադիր ձեռնարկելու այդպիսի ոճիրների դէմ. յատկապէս ինչ կը ձեռնարկի Ամերիկայի մեծ հասարակապետութիւնը, որի ներկայացուցիչները Սիրիայում թոյլ տուին, որ իրենց աւանդ յանձնուած հնադիւանները (արխիւները) յափշտակեն թիւրքերը։

### ՈՒՐՖԱՅԻ ԻՆՔՆԱՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆԸ

Հայաստանի զանազան վայրերէն տեղահանուած հայերը Ուրֆայէն անցուցած են, որով այդ քաղաքը հանդիսատես եղած է սպանութեանց և բռնաբարումներու։ Կարգը եկած էր Ուրֆայի հայութեան, որմէ 40—50—100 հոգինոց-խումբեր Տիգրանակերտ է դրկուած։ Հայերը պահ մի կաշառքով յետաձգում են տեղահանութիւնը, բայց յետոյ դարձեալ այդ մասին շշուկներ են սկսում շրջել և վերջոյ հրաման է լինում։ Հայերը որոշում են ինքնապաշտպանութեան դիմել։ Թիւրքերը գերմանացի զինուորականի աջակցութեամբ 5,000 հոգով յարձակւում են ու 15 օրուան անհաւասար կռիւէ յետոյ թիւրքերը կատարեալ պարտութիւն են կրում մեծ կորուստներ տալով։ Հայերուն ձեռնառումբերը և խրամատները մեծ գործ են տեսնում։

Եօթնօրեայ պատրաստութենէ յետոյ՝ թնդանօթներով յարձակումը վերսկսւում է դժոխային կրակ տեղացնելով, մինչ հայերուն գնդակները սպառւում են։

Գտնուեցան հարիւր հայ աղջիկներու դիակներ, ընկած զէն ի ձեռին…

Ողջ մնացած կիներն ու որբերը ուղարկւում են՝ դէպի Ռաքքա, իսկ այրերը կախաղան հանւում։

«Արձագանգ Փարիզի» № 7։

—

Ամերիկայի 44 քաղաքների հայ կանանց Կարմիր Խաչի յանձնաժողովների ներկայացուցիչները դիմել են Ամենայն Հայոց Վեհ. Կաթողիկոսին և բողոքում են Մուշեղ եպ. Սերոբեանի ընթացքի դէմ։ Այդ բարձրաստիճան կրօնաւորը և եկեղեցու պաշտօնեան հրապարակով պայքար է սկսել հայ կանանց գործունէութեան դէմ, նրանց ընկերութիւնը մի թերթում կոչել է «կարմիր մահիկ» և կանանց վարմունքն էլ «իգային լրբութիւն», ինչպէս գրում են բողոքողները Վեհափառ Հայրապետին գրած թղթում, որ տպագրուած է Հորիզոնում։

—

Երզրումի Հայկ. Կոմիտէն օգնութիւն է խնդրում փախստականների նոր հասած խմբերի համար, որոնց մեծ մասը երեխաներ են ու կանայք։ Դերսիմի քիւրդերի մօտ 4000 հայ են պատսպարուած։

—

Քաղաքների Միութեան Կով. բաժանմունքի մէջ լուր է ստացուել, որ Երզնկայից Բաբերդ են եկել 1000-ի չափ փախստականներ, որոնց մեծ մասը երեխաներ ու կանայք, շատ մեծ նեղութեան մէջ են։ Երզնկայում կան սովի մատնուած 400-ի չափ հայեր։ Շուտափոյթ օգնութիւն է պէտք։

## Գրականութիւն

### ԳԵՂԵՑԿՈՒԹԻՒՆ

*(Հատուած)*

*Գալիս է գարուն, և ձմրան ցրտից խորշոմած թփեր*
*Նորից բանում են իմ սրտի նման փոքրիկ կոկոններ,*
*Զգում է երկիրն իր սառած կրծքում օդի տաքութիւն*
*Դաշտը սեւցած է, և էլ չենք տեսնում ձիւնի մաքրութիւն.*
*Կարկաչ է հանում անուշ զնգոցով վտակն ու առուն*
*Երբ նրան վերից լայն արեգակն է ջերմութեամբ ժպտում.*
*Զուգւում է երկիրն զգալով շունչը սիրուն ապրիլի*
*Միայն իմ սիրտը դեռ տէր չէ եղել անուշ շրթերի.*
*Անտառն է զարթնում, և թարմ ոստերով տարւում են ծառեր*
*Արտերը կանաչ մերկ քարափներն էլ հագել են շորեր,*
*Երբ կարմիր լալան բացել է այնտեղ իր լայն թերթիկներ։*

*Զարթիր իմ սիրտ, և կռուիր*
*Չես տիրացել դեռ մէկին,*
*Զարթիր վհատ քո քնից*
*Այսպէս նրանք երգեցին։*

*Բարձր են հնչում ձայները*
*Եւ քաղցր քան մի գարուն,*
*Նրանց երգը լսւում է*
*Լեռների մէջ սիրասուն։*

*Հաւաքում են թերթերը*
*Ծաղիկների ոստերից,*
*Եւ քաջաբար ինձ նետում*
*Մանուշակի թելերից։*

*Զարթիր իմ սիրտ, շուտ զարթիր*
*Ծաղիկների դիւթանքից,*
*Երբ նոքա էլ բանում են*
*Քարափների արանքից։*

*Գալիս է գարուն, և գետի ջուրը այս քանի անգամ*
*Սառչում է հալւում տաղուերգի հետ իմ սրտի նման,*
*Բարձրանում է վեր երկրի արանքից ուժեղ գոլորշին*
*Տէր են ամենքը վստահով գնած իրենց ապրուստին,*
*Բզզում է մեղուն, և բարձր է թռչում ծիծառը անուշ*
*Վիշտն ամոքուած է և էլ չեն յուզւում սրտերը քնքոյշ.*
*Եւ ով խօսում է պարզ առուակի պէս առանց հոգսերի*
*Նա էլ մինչ այսօր դեռ տէր չէ եղել երկու աչերի,*
*Պարզ աստղերի պէս, ջութակի համար գոյգ գիսակների։*

Ա. Զանեան

# ՆԱՀԱՆՋԻ ԴՐՈՒԱԳՆԵՐԻՑ *)

## 2

## ՍԵՒ ԳԵՏ

—Գնա՜, գնա՜...

Թերևս Կոլոմբոսը այնքան չուրախացաւ Նոր-երկիրը գտնելիս՝ ինչքան այս մարդկային ծարաւ հօտը՝ գետի յորդառատ ջուրը տեսնելով...

Թուլացած ծունկերը ոյժ առին, ուռած ոտները թեթևացան, ծարաւահեծ շրթունքները կարծես հովացան գետից փչող հովերով։ Երեխան դադարեցրեց իր լացը, հիւանդը մի դեղ ստացածի նըման կազդուրուեց... Օրուան տառապանքը մեղմացաւ, մոռացուեց։ Կենդանութեան ժպիտը սկսեց խաղալ բոլորի մռայլ դէմքին։ Շատերը հրճուանքից ուղղակի արտասւում էին, շատերն էլ մինչև գետին շ ի ւ ք ը տ ա լ ի ս (փառք տալիս) Տիրամօր քաղցր սըրտին...

Բայց դեռ բաւական ճանապարհ կար մինչև գետը։ Նայում էինք շարունակ ագահութեամբ նրա պսպղուն երեսին, որ մի գուցէ կորցնենք յանկարծ։ Երանի՜ էինք տալիս գետափին իջած մարդկանց, որոնք արդէն յագեցած կը լինէին ջրից, այնուամենայնիւ զարմանում էինք, թէ ինչպէս նրանք այդքան անտարբերութեան ընդունակ էին նստել ջրի կշտին ու չէին վազում, երեսները դէմ անում լայն գետի հոսանքին, ինչպէս մենք պիտի անէինք այս րոպէիս՝ եթէ նրանց տեղը լինէինք...

Ահա գալիս են բ ա ղ դ ա ւ ո ր ն ե ր ը ջրի քովից, ձիերի վրայ հեծած, ձեռքները մի-մի ջրաման՝ յետևումը թողած իրենց ընտանիքի անդամներին ջուր հասցնելու համար։ Հազիւ համակերպած երեխաները սկսում են նորից լաց ու շիւան. չէ՞ որ նրանց համար անծանօթ է դեռ ի մ ն ու ք ո ն ը. սափորը լիք ջուր են տեսել և պահանջում են...

Քայլում ենք, հա՛ քայլում, անսովոր թափով, յաճախ վազելով, բայց անտէր ճամբան երկա՜ր է, անծէ՜ր... վերջապէս հասնում ենք «բանակ դրած» նահանջող Վանին, որը դեռ գետը չըր հասած՝ արդէն նստել, տեղ է բռնել։

Ահա և Սև-գետը մեր առաջ, որ պղտոր-պղտոր գալարւում է արևելքից-արևմուտք, դէպի Վանայ ծովը։

Գետի ամբողջ երկայնքը, 5—10 րոպէ տարածութեան վրայ, երկու ափերին ասեղ գցելու տեղ չկայ։ Ջուրը առատ է, սպառելու կասկածը ո՛չ ոք չունի, բայց կարծես փախցնում, խլում լինեն առաջներից—այնպէս սկսում են հրել, առաջը կտրել իրար, մի րոպէ շուտ յագուրդ տալու իրենց ծարաւին. իսկ թէ ի՛նչ է կատարւում գետի վերին մասում—ո՛չ ոք դրա վրայ ուշք չի դարձնում և օձերի նման փորսող տուող կամ չորքոտանիների նման թաթերի վրայ ընկած՝ մէկ խմում, մէկ շունչ են առնում, նայում արագահոս գետին և նորից խմում դաղջ, պղտոր ջուրը, ամեն մի ումպին մի ջերմագին «օխէ՜շ» կցելով... Խմել-կշտանալուց յետոյ նո՛ր են նայում իրենց վերևին ու նողկանքով տեսնում՝ որ մէկը իր ուռած, աղտոտ ոտքերն է երկարել ջրի մէջ ու լուանում է, հանգստացնում է... Մի ուրիշը երեսն ու ականջներն է մաքրում, մի երրորդը՝ երեխի կեղտոտած շորերն է ճմրթկում ջրի մէջ... Իսկ անասունները։—Նրանք հօ անբան են ու անզգայ...

Այս անգամին էլ առաջին տագնապն անցկացրածները դիմում են դէպի գետի վերին ընթացքը, որպէսզի այնքան խմեն՝ մինչև էտ անիծուած ջրի անունը չտան այլևս և նրա ահը էլ չտանջէ իրենց ջիգերը... Ի՛նչ պիտի լինէր սակայն վիճակը այս հսկայ զանգուածին, եթէ Սև գետը չըլինէր այստեղ։

Իրիկուն եղաւ։ Ստուերները կամաց-կամաց սկսեցին իջնել Սև գետի հովտում. գիշերը մտնում էր, առաջին սարսափելի գիշերը ընաւեր վանեցիներուս։

5—10,000 բազմութիւն կար թափած այդ փոքրիկ տարածութեան վրայ. այնքան էլ անասուն, որոնց ձայներից մի անտանելի ժխոր էր բարձրանում, մի կատարեալ թոհ ու բոհ.

Արևը արդէն մայր է մտել։ Սկսւում է այլևս այն պահը՝ երբ մարդկային աչքը դադարում է առանց արհեստական լոյսի ու իր դերը յանձնում է ականջին ու մատներուն... և բացւում է անօրինակ մի տեսարան։ Անօրինակ՝ իր ողբերգականութեամբ, անօրինակ՝ իր հնարիմացութեամբ։

Հարիւրաւոր ձայներ կանչում են գետի այս ու այն ափերից, կանչում են իրար՝ անուններով, ազգանուններով, երբեմն և մակդիրներով՝ որպէսզի աւելի հեշտ ճարուեն։ Մեզ պէս՝ շատերն են հետ ու առաջ ընկել, շատերն են բազմութեան մէջ մոլորել և կորցրել իրենց պարագաների նստած վայրը, որի համար, յաճախ, նշան են ընտրել մի կրակ, մի վրան, մի խումբ եզներ և այլն...

Ու կանչում են իրար, կանչում բարձրագոչ, կոկորդալիր, կանչում՝ մեղմ, ամօթխած, կանչում լալագին, յուսահատ, զայրացկոտ ու սրդողած, կանչում գորովագեղ, «քե մեռնեմ»ով, կանչում գռեհկօրէն, հայհոյանքով...

Այդ բոլոր կանչերի մէջ, սակայն, ամենասրտացաւը կորած երեխաներինն է։ Նոր «բ է ր ե կ ա ծ» գառնուկների նման դէս ու դէն վազում և «մարէ, մարէ» լացի ճիչերով սիրտը քամում ունկնդիրներին...

Նուրբ լսողութիւն էր պէտք՝ այդ բազմատեսակ ձայների միջից ջոկելու իր որոնածի կամ կանչողի ձայնը։ Յաճախ մի կանչին՝ մի քանի տեղից պատասխաններ էին ստացւում։ Իւրաքանչիւր մէկը կարծում էր թէ հենց իրեն են կանչում՝ երբ լսում է իր անունը։ Շատերը ստիպւում էին հեւհեւ վազել կանչողի քովը՝ այդ ստուգումը կատարելու համար, որպէսզի յանկարծ նրան էլ չկորցնեն...

Մայրս ու եղբայրներս, որոնց հետ դուրս էինք եկել տնից, չկան դեռ։ Նստում ենք ընկերների քով և սպասում մերոնց։ Ընթրիքի սեղանը փռւում է. հացը դեռ առատ է. շատերն են ուզում բաժանուել իրենց շալակի ծանրութիւնից։ Գործը դժուարանում է սակայն, երբ հերթը քնանալուն է հասնում։ Այստեղ այլևս ընկերութիւնն ու փափկասրտութիւնը գործ չունին։ Իւրաքանչիւր ընտանիքը հազիւ մի-մի վերմակ կամ ադեալ ու բարձ կարողացել է շալկել, բերել ի ր հ ա մ ա ր, որի մէջ էլ փաթաթւում են նրանք, սեղմւում իրար կողքին և պառկում չոր գետնի վրայ... Քանինե՜ր նրանցից արդէն հիւանդ՝ տնքում են վերմակի տակ։

Երեխաներս յոգնութիւնից փակել են աչքերը՝ իրենց մօր ծնկների վրայ, մինչ մայրն էլ իր հերթին օրօրւում է քնի մէջ՝ առանց գլուխ դնելու համար մի տեղ գտնելու։ Մեր անկողինը բարեկամաբար իր եզի վրայ ձգող ազգականս կորել է։

Վազում եմ աւելի բաղդաւոր ծանօթներուս մօտ, որոնք եկած են սայլերով ու անասուններով։ Խնդրում, աղաչում եմ մի վերմակ փոխ տալ այս մի գիշերուան համար, խեղճ են երեխէքս, կը մրսեն, կը հիւանդանան։

Ոչ մի արձագանգ, ո՛չ մի արգահատանք, ո ւ ր ի շ ը գոյութիւն չունի բացի «ես»ից։

Գետի միւս ափից յանկարծ լսում եմ իմ անունս.—եղբայրս է։ Եկած են վերջապէս։ Շտապում ենք անոնց քով։

Հետզհետէ հասնում են Վանից ուշ դուրս եկողները, որոնք անզօր զայրոյթով նկարագրում են մեզ, թէ ինչպէս մեր հեռանալուց իսկո՛յն յետոյ, խնամքով փակած մեր դռները արդէն բացուել են, թէ ինչպէս իրենք, սեփականատէրերը, չդիմանալով այդ ափաշկարայ թալանին, նոյնիսկ զէնքի են դիմել... «Կարծես մեզ խուճապի մատնեցին, որպէսզի իրենք մնան ու անսանձ թալանի սկսեն,—յուսահատ կատաղութեամբ եզրակացնում էին պատմողները։

*) Տես «Համբաւաբեր» № 30։

Սկսւում ցուրտը և օրւան տառապանքը յաղթում են մեր ջիղերին։ Ու ամենքս, կողք-կողքի, փռւում ենք կապերտի վրայ, ծրարւում և յանձնւում Մորֆէի թևերին։ Խաղաղ քունը մեծագոյն երջանկութիւնը պիտի լինէր մեզ համար՝ ջրի յաղեցումից յետոյ։ Բայց սառն է գիշերը, պղտոր են մտքերը, խռովայոյզ են երազները... Հանգիստ չըկայ ու չըկայ...

Թռչնիկ

---

## Մ Ե Կ Ն Ո Ւ Մ

Արևի վերջին ճառագայթները ընկան տանիքներին. գօմս ու հովը նոր սկսած՝ մթնշաղի այդ սկզբին՝ ցածլիկ տներից մէկ մէկ ատլաղակ կոնատակերին, փայտերը թրխկացնելով մէկիկ մէկիկ դուրս կելնեն «մերոնք», հաւաքուելու նախօրօք որոշուած մի կանաչ տափարակ տեղ։

Դուրս կելնեն ոմանք արցունքոտ աչքերով. գլուխնին կախ, բաժանումի, երկիր գնալու սրտմաշուքը իրենց կրծքին, ոմանք էլ գլուխնին բարձր պահած, խեղդած լացն ու հառաչ, կը հաւաքուին, կը մօտիկնան իրարու...

Ահա մայրերը, որոնք ճչացող մանուկներու ձեռներից բռնած, գողնոցի ծայրը իրենց արցունքոտ աչքերուն կը մօտիկցնեն։

Ծամբու կը դնեն իրենց տղամարդկանց. չեն ուզեր լալ որ կուղարկեն «օճախ շէնցնողներուն». չեն ուզեր, բայց չեն կարող չլալ, քանի որ իրենք դեռ պիտի մնան, քաշկռտուեն, աչքները «մուրազ»ի ճամբուն սպասեն պիտի երկար սրտմաշուքով...

—Ա՜խ, «բէմուրազ աշխարհ... դուրս կը թռչէ կրծքներից...

Հրաժեշտի րոպէն է։

Դրկախառնութիւններ. լաց ու կոծի մէջ կը լսուին չմեկնողներու ախ ու վախերը։—«Վայ, բարօ. մեզ էլ տար», կը ճչան փոքրիկները. կը փղձկան սրտերը....

Կը բաժանուին, ամանաթ կուտան իրարու անտէր մնացած իրենց օրլուշաղը և սուսիկ-փուսիկ ճամբայ կընկնեն. գլուխնին կախ, մտածկոտ...

Կայնած հեռուն՝ կը նայեմ մեկնողների այդ փոքրիկ խմբին. հարցերը մէկը միւսից հրապարակ մէջս կառաջանան։

Ի՞նչ կը լինի արդեօք նրանց դրութիւն ճամբին. ապահով կը հասնի՞ն թէ ոչ։

Իսկ այնտեղ, արիւնոտ բայց քաղցր այդ հողն ու ջուրը ի՞նչ պիտի տար իրենց, պիտի կարողանայի՞ն ապրել թէ ոչ.

Ահա բոլոր այս հարցերի հետ մէկտեղ՝ «հոգածուների» մասին կը մտածեմ. ինչ չափերով են լարուած ճիգերը՝ վերադարձողներուն յոյս տալու, կեանք տալու...

Կը հասնեն և կը վերստեղծեն։ Այս մեր յոյսն է, որովհետև բոլոր մեկնողներ՝ հառաչների հետ ունէին տրոփող սիրտ, դեռ ջղուտ բազուկներ, վերստեղծող ոյժ։

Մէրեր-բոլոր տեսակի և վրէժներ բոլոր տեսակի՝—սնունդ են սրտի, մտքի սնունդ և կը ստեղծագործեն։

Ահա մեր յոյսը։

Ազատ Խորենեան

---

## «ԳՈՐԾ» ԱՄՍԱԳԻՐ

Առաջիկայ 1917 թուի յունուարից Բագւում կսկսի հրատարակուել «ԳՈՐԾ» հասարակական, գրական և գիտական ամսագիրը։

Մինչև այդ թուականը, աշնան ամիսների ընթացքում խմբագրութիւնը մտադիր է հրատարակել մէկ կամ երկու փորձնական համարներ։ Ձեռնարկելով «ԳՈՐԾ» ամսագրի հրատարակութեան, խմբագրութիւնը նպատակ ունի ծառայելու հայ ժողովրդի կուլտուրական զարգացմանը և նպաստելու նրա ինքնագործութեանը։

Խմբագրութեան կարծիքով այդ նպատակին տանող ուղին հասարակական շիտակութիւնն է և մեր կեանքի լուրջ ուսումնասիրութիւնը, ուստի ամեն մի շրջանկատ ու անկողմնակալ խօսք և մեր կեանքը լուսաբանող ամեն մի լուրջ ուսումնասիրութիւն սիրով և լայնախոհութեամբ կընդունուի ամսագրում։

Խմբագրութիւնը հաւատացած է, որ բոլորիս իղձը՝ հայ ժողովրդի հոգևոր բարգաւաճումը՝ կարող կլինի ի մի խմբել հայ խօսքի ու մտքի սակաւաթիւ սպասաւորներին։

Եւ այդ հաւատով դիմում է նա անխտիր բոլոր հայ գրողներին և խնդրում աշխատակցել «ԳՈՐԾ» ամսագրում։

Վարձատրութեան սկզբունքն ընդունուած է անպայման։

Խմբագրական կազմն է.—

Դաւիթ Անանուն
Երուանդ Թաղիանոսեան
Յոլակ Խանզադեան
Յակոբ Մանանդեան
Արտաշէս Չիլինգարեան

Խմբագիր՝ Կոնստանդին Կրասիլնիկեան
Հրատարակիչ՝ Սարգիս Տէր-Ղազարեան

Հասցէն—Баку, улица Гоголя, № 11, Е. Тагіаносянцъ.

---

## Փ Ո Ս Տ-Ա Ր Կ Ղ

ԳՈՐԻՍ, Բագունց Աղ.-ին.—Թարգմանութիւններ առհասարակ չենք տպագրում։ Դասական հեղինակների գրուածքների յաջող թարգմանութիւնները կարող էին բացառութիւն կազմել, եթէ միայն ապահով լինէինք թէ արդէն թարգմանուած և տպագրուած չեն եղել։ Այս հանգամանքը մեզ ստիպում է ձեռնպահ մնալ Ձեր Գ. Մոպասանի «Խելագար»ի թարգմանութիւնը հրատարակելուց։

—

ԱԽԱԼՑԽԱ, Կ. Հ. Բ. Ընկերութեան ճիւղի Վարչութեան նախագահին.—Նուիրատուութեանց ցուցակը խնդրում ենք ուղարկէք միասին և կրճատ։

---

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ



*Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի* Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.